# ԱՅՍ ՀԱՄԱՐՈՒՄ

## №: 12 ● 1983

Լույս է տեսնում 1923 թվականից



Շապիկի առաջին էջը՝
ՌՈՒԲԵՆ ՄԱՆՈՒԿՅԱՆԻ



ՎԱՀԱԳՆ ԴԱՎԹՅԱՆ

# ԳԻՇԵՐՆ ԱՆՏԱՌՈՒՄ

Մեծ Արջը քնել կապուտակ որջում,
Լիզում է թաթերն իր սաստղաթաթախ...
Ու դու, մերկ անտառ, մթան մեջ կորչում,
Թվում է, դու էլ ննջում ես խաղաղ:

Բայց վաղը, գիտեմ, երբ քո գիրկը գամ,
Հրաշքով պիտի ելնես ընդառաջ,
Ինձ պիտի պարզես բոցդ մոգական,
Որ արեգակի ծվենն է կանաչ:

Եվ պիտի պարզես դողն այն երկնային,
Որով կդողա տերևդ վառման,
Եվ այն ծաղիկը, որ ինձ կնայի,
Թաց աչքերի մեջ մի կապույտ զարմանք:

Եվ պիտի խորհեն, թե դու ես, գարուն,
Դու ես պարզապես անտառին փարվել...
Եվ չի հասկանա ոչ ոք աշխարհում,
Թե մի գիշերում ի՜նչ է կատարվել...

«ՊԻՈՆԵՐՆ» ԱՌԱՋԱՐԿՈՒՄ Է



# ՎԵՐԱԿԱՆԳՆԵՆՔ ՍՈՍՅԱՑ ԱՆՏԱՌԸ

Բնություն բառն արարող մեր նախնիները բառի հիմքում պահել են ծառի բուն իմաստը, որովհետև ծառը համարել են բնության անբաժանելի մասը, որովհետև չեն պատկերացրել բնությունն առանց ծառի: Երևի քչերը գիտեն, որ դրախտ բառացի նշանակում է ԾԱՌ, ԾԱՌԱՍՏԱՆ: Ամենևին էլ պատահական չէ, որ հնում մարդկային երջանկությունը կապել են ծառաստանի՝ դրախտի հետ:

Ծառը բնությունը դարձնում է երիտասարդ ու վայելչագեղ, նրա շվաքը սրտապարար զովությամբ է լցնում մարդու հոգին, պտուղն ուտում են ըմբոշխնելով: Ծառը երաշտի դեմ պատվար է և միաժամանակ կենսունակ է պահում հողի վերին՝ թանկ ու բարեբեր շերտը: Նաև ջուր ու թթվածին է տալիս մարդուն: Ծառը վառելիք է, որի կրակը հազարավոր տարիներ տաքացրել է մարդուն: Նրա փայտից պատրաստում են և՛ շենք, և՛ նավ, և՛ մեքենամասեր ու զարդարանք, թուղթ և հազար ու մի այլ բան: Ծառի տերևները ինչ-որ չափով խլացնում, մեղմում են աղմուկը: Իսկ մեր ժամանակներում բազմացել են ականջ սղոցող ձայները, աշխարհը լցվել է աղմուկով:

Սովետական Հայաստանը սակավանտառ հանրապետություն է: Անցյալում էլ ծառաշատ չի եղել: Անտառների ընդարձակումը հեռանկարային նշանակություն ունի ժողովրդական տնտեսության համար: Վերջին տարիներին կանաչ հարստությունը պահպանելու և ընդարձակելու մեծ շարժում է սկսվել, տնկվել են ընկուզապտղավոր շատ պլանտացիաներ ու անտառ-այգիներ:

Այդ գործում բազմազան նախաձեռնություններ են ցուցաբերում պիոներները: Հանրապետության տարբեր կողմերում նրանք շատ պուրակներ և այգիներ են տնկել:

Այժմ էլ եկեք պիոներական նախաձեռնությամբ վերականգնենք Սոսյաց անտառը:

Ամսագրի № 10-ից դուք արդեն ծանոթ եք Սոսյաց անտառի պատմությանը, գիտեք, որ այն գտնվել է այժմյան Հոկտեմբերյանի շրջանում, Արմավիր բլուրի մոտ:

Անտառը սոսափել է մոտ 2 հազար տարի: Ու համարյա 2 հազար տարի է, ինչ ոչնչացվել է: Մնացել են անտառի մասին հիշատակությունն ու նրա անվան հետ կապված զրույցները:

Մենք գիտենք միայն անտառի տեղը: Գիտենք նաև, որ անցած 2 հազարամյակում փոփոխությունների են ենթարկվել Արարատյան դաշտի բնակլիմայական պայմանները: Չի պահպանվել նաև այդ ժամանակներում աճող հայկական սոսին:

Եվ, այնուամենայնիվ, մենք կարող ենք սոսիների հարմար տեսակներ ընտրել ու սկսել ծառատունկը: Հավատացած ենք, որ պիոներներին կօգնեն գիտնականները:

Տնկենք, խնամենք, աճեցնենք: Հիշենք, որ անտառը բարիքի աղբյուր է, իսկ նրա ստեղծումն ու պահպանումը՝ հայրենասիրական մեծ գործ: Ապա փորձեք մի պահ պատկերացնել, թե ինչ երջանկություն կզգաք դուք, եթե երկու հազար տարվա ընդմիջումից հետո խշշան Սոսյաց անտառի սաղարթները, վերականգնըվի Հայաստանի հնամյա կանաչ պսակը:

## ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ



# Շուրջս գարուն է

Շուրջս գարուն է..
Շուրջս փայլում է
Մետաքսը կանաչ
Նորելուկ խոտի,
Շուրջս բուրում է
Պսակը զվարթ
Նորաբաց ծաղկի:

Շուրջս գարուն է...
Մեղմիկ զեփյուռից
Օրորի մեջ է
Բարդին նազելի,
Ժպտաչ արեգակն իր ջերմ շողերով
Գագաթն է շոյում
Մեր Արագածի:

Շուրջս գարուն է...
Մանուկն է ժպտում
Եվ մաքրություն է
Իր շուրջը սփռում,
Եվ մայր գարունը արդար օրհնանքով
Պայծառ արեգակ և խաղաղություն,
Կապույտ երկինք է եկել ավետում,
Շուրջս գարուն է...

**ՄԱՐԳԱՐԻՏ ԽԱՉԱՏՐՅԱՆ**
Արտաշատի շրջան, Մխչյան գյուղի
դպրոցի 7-րդ դաս. աշակերտուհի

# Ծաղիկն ու առուն

Այն գողտրիկ ափին,
Ուր հանդիպեցի
Այդ սիրուն ծաղկին,
Հանդարտ օրորուն,
Երգում էր, կանչում
Խոխոջուն առուն
Եվ ինքն իր համար
Ճամփա որոնում:
Նա էր փայփայում
Այդ սիրուն ծաղկին,
Օրոր էր ասում
Երգով սիրասուն:
Եվ լույս էր նրանց
Պարգևում արփին
Այն գողտրիկ ափին:

**ՄԱԴԼԵՆ ՂԱԶԱՐՅԱՆ**
Երևանի Ն. Կ. Կրուպսկայայի անվ.
դպրոցի 6-րդ դաս.

# Աշուն

Թռչուններր չվեցին,
Աշնան միջից ցրտաշունչ,
Տերևներր թափվեցին,
Աշնան քամուց դառնաշունչ:

Եղյամ կապեց չոր խոտին,
Իսկ մշուշն էլ՝ գետակին,
Ցրտում են տաք օրերը,
Մոտենում է ձմեռը:

# Այրված հուշեր

Աշնան վերջին օրերն եկան,
Ծառերր մերկ մնացին,
Իսկ նրանց տակ դեղնած ու չոր
Տերևներր վառեցին:

Ու այրվելով նրանք իրենց
Ամռան հուշերր տարան,
Ու կարծեցին, թե հավիտյան
Ծառերը մերկ մնացին:

**ՀԱՐՈՒԹՅՈՒՆ ՔԻՐԵՄԻՋՅԱՆ**
Երևանի № 114 դպրոցի 4-րդ դաս.





ՀՈՎԻԿ ՎԱՐԴՈՒՄՅԱՆ

# Անցնող գնացքներ

Առավոտ շուտ, երբ դեռ գյուղը քնած էր լինում և օդն անապական ու պարզ, լսվում էր Դեբեդի կիրճով անցնող գնացքների երկար ու սրտաճմլիկ սուլոցը: Ապա անիվները համաչափորեն չըխկ-չըխկում էին երկաթե գծերի վրա ու աստիճանաբար մարելով, հեռանում:

— Նիկոլայ թագավորը,— ասում էր Եվրոպա տեսած Հովհաննես հորեղբայրս, — հարյուրանոցը դնում էր քարի վրա ու ասում.— ով այս հարյուրանոցի չափով մի մետր ծակի քարը, հարյուրանոցը նրանն է...

Ամեն անգամ, գնացքի սուլոցը լսելով, այդպես էր ասում Հովհաննես հորեղբայրս: Եվ մենք, որ ոչ մի կապ չէինք տեսնում գնացքի սուլոցի ու հարյուրանոցի միջև, միայն երազում էինք մի անգամ գընալ, տեսնել այն, մոտիկից ականջ դնել

անիվների համաչափ ու կախարդական չխկչխկոցին:

Մեր գյուղն ընկած էր Դեբեդի կիրճից վերև գտնվող հարթավայրի ու վեր խոյացող լեռնաշղթայի հատման սահմանագծում: Լեռնաշղթայից աղբյուրներ էին իջնում գյուղի մեջ, գոյացնելով Մեծ ու Պուճուր աղբյուրները: Իսկ հարթավայրերի դաշտերից միշտ հնձված արտի բույր էր տարածվում, խառնվում Դեբեդի կիրճում հասունացող դեղձերի հոտին:

Գյուղի շուրջբոլոր փռված ամեն մի հողակտոր իր անունն ուներ, և մարդիկ նրանց մասին խոսում էին ինչպես շնչավոր, կենդանի արարածների: Այնքան էին սիրում իրենց հողը: Տարօրինակ, երբեմն չմեկնաբանվող անուններ էին՝ Լղոց, Ծփրթան, Սանգար... Այս անունները կնքել էին մեր պապերը, ինչ-որ դիպվածի, ինչ-որ ուրախության կամ դժբախտության կապակցությամբ, վաղուց. անհիշելի ժամանակներում, որպեսզի կարողանան զանազանել միմյանցից, հաղորդակցվել միմյանց հետ, պլանավորել խոտհունձն ու բերքահավաքը: Այդ դաշտերից ու հանդամասերից յուրաքանչյուրում հոսել էր իմ պապերի արյունը, խառնվել քրտինքի հետ ու դրանով հողն ավելի էր սրբացել, դարձել մերձավորի նման հարազատ ու թանկ: Այնքան հարազատ, որ մարդիկ հեռանալով մինչև Եվրոպա, Ամերիկա, Լուսին, չէին կարողանում մոռանալ ու թեկուզ կյանքի գնով, ետ էին գալիս, մեռնում իրենց հողի վրա, որպեսզի այնտեղ էլ թաղվեն:

Դաշտերի սահմանագծերում, մի փռընչենու կամ հաճարենու տակ, փոքրիկ խաչքարեր են դրված, խաչերկաթ, մատուռ է կառուցված կամ հսկա վանք: Սրանք իմ հերոս պապերի գերեզմաններն են, որոնք ընկել են օտար նվաճողների սրերից, պաշտպանելով իրենց նախնիներից ժառանգած հողը, իրենց իրավունքը այդ դաշտերի, լեռների ու անտառների վրա:

Գյուղից քիչ վերև, լեռների լանջերից, սկսվում են անտառներն ու բարձրանալով մինչև գագաթները, շուռ են գալիս դեպի հակառակ կողմը:

Լեռներն ու քարաժայռերը նույնպես ունեն իրենց անունները: Ամենափոքրիկը Պոպլոզն ու Ույուղն են: Այս ժայռերի վրա են տղամարդ դառնում բոլոր մեծացող տղաները, փորձելով իրենց ժայռ մագլցելու կարողությունները:

Ասում էին, որ այստեղից երևում են Դեբեդի կիրճով անցնող գնացքները: Եվ ես գիշեր-ցերեկ երազում էի բարձրանալ այնտեղ ու նայել սուլոցով անցնող գնացքներին:

Ույուղ ժայռը երկու կողմ ուներ՝ կարճ և երկար: Երկու կողմն էլ պատի նման ուղիղ իջնում էին մինչև գետին, սակայն մեկը կարճ էր, որովհետև մտնում էր հաջորդ՝ վերևի ժայռի մեջ, իսկ հակառակ կողմն իջնում էր անդունդի վրա: Այդ անդունդից բարձրացել էին մեր հայրերը և պապերը: Պարզ երևում էին խփված երկաթյա կեռերը: Մենք որոշեցինք առաջին անգամ կարճ կողմից բարձրանալ: Բարձրանալը հեշտ էր: Եվ գագաթից տեսանք մեր գյուղն իր ամբողջությամբ, մեր դաշտերը, մեր առուներն ու գետակները և Դեբեդի կիրճով անցնող գնացքների ճանապարհը: Եվ ահա, ոլորանից այն կողմ երևաց գնացքը: Շոգեքարշից քուլա-քուլա ծուխ էր բարձրանում: Պարզ լսվեց սուլոցն ու անիվների չխկչխկոցը: Լեռներում ավելի պարզ էր լսվում, քան ներքևում: Եվ օդն այնքան մաքուր էր, այնքան անաղարտ, որ ամեն ինչ պարզ երևում էր:

Սլաքավար Համբոն դուրս եկավ տնակից, կանգնեց երկաթգծի կողքին, պահեց դեղին դրոշակը և մեքենավարը նրան ձեռքով արեց ու շոգեքարշը նորից երկար և ուրախ սուլեց: Մենք հմայված նայում էինք այդ կախարդական տեսարանին... Եվ ուզում էինք թռչել: Առաջին անգամ ունեցա թռչելու ցանկություն և հասկացա, թե ինչու են մարդիկ տխրում անցնող գնացք, թռչող ինքնաթիռ, օտար երկրից եկած մարդ տեսնելիս: Այդ ի՞նչ թախիծ է մտնում մարդկանց մեջ և երկար ժամանակ դուրս չի գալիս:

Շատ գնացքներ անցան: Եվ բոլորը Համբոյի տնակի մոտ սուլոցով ողջունում էին նրան ու հեռանում, կորչում հանդիպակաց ոլորանում: Եվ մարդիկ, միշտ այսպես ճանապարհում էին անցնող գնացքներին ու նրանց կհոշոտեր թախիծը, եթե չլիներ դիմացի ոլորանից նոր, անծանոթ գնացքի հայտնվելու հույսը: Դրա համար էլ հրաժեշտ տալով, նայում էին նորից դեպի դիմացի ոլորանն ու ռսպիանում էր անցնող գնացքների կարոտից առաջացած վերքը:

Սկսեց մթնել: Փորձեցինք իջնել և զգացինք, որ բարձրության վախ գոյություն ունի: Վերևից ժայռն ավելի բարձր ու

սարսափելի էր երևում: Հուսահատությունից սկսեցինք բարձրաձայն լաց լինել: Գյուղում ճրագներ էին վառվում: Ապա մեկ-մեկ ճրագները դուրս եկան գյուղից ու շարժվեցին դեպի վերև: Իջեցրին: Մենք լաց էինք լինում, իսկ նրանք ուրախ քրքջում էին: Տուն վերադարձանք:

Տատս սեղմում էր ինձ կրծքին ու շոյում գլուխս: Այդ օրը պատմեց Շահանգյուլի հեքիաթը: Շահանգյուլն իրենց տան միակ զավակն էր և աղջիկ: Երբ տղաները ճանապարհի պաշար են վերցնում ու գնում օտար երկրներ բախտ փնտրելու, ապրուստ հայթայթելու, Շահանգյուլը տղայի շորեր է հագնում ու իր Միշկո շան հետ, նույնպես գնում է վաստակելու: Երկար արկածներից հետո, Շահանգյուլը մեծ հարստության տեր է դառնում, մեծ հաջողություններ է ունենում: Թագավորի տղան գլխի է ընկնում, որ նա աղջիկ է և ցանկանում է կնության առնել, սակայն Շահանգյուլի սրտում միշտ վառվում էր հայրենիքի կարոտը և նա ամեն ինչ թողնելով, վերցնում է իր հավատարիմ Միշկո շանն ու վերադառնում իրենց գյուղի փոքրիկ տնակը:

Եվ ինչքան տխուր էր վերջանում հեքիաթը: Հավատարիմ Միշկո շունը, երկար չարչարանքներից հոգնած, որոշում է մի գիշեր հանգստանալ: Առանց հսկողության է թողնում տունը, և թագավորի տղան գողանում է Շահանգյուլին: Առավոտյան արթնանում, տեսնում են չկա իրենց սիրելի աջիկը...

Լսելով տատիս հեքիաթը, չգիտեմ, թե ինչու հիշեցի անցնող գեղեցիկ, անհասկանալի գնացքները, որոնց մասին խոսք լինելիս, Եվրոպա տեսած Հովհաննես հորեղբայրս ասում էր, թե Նիկոլայ թագավորը հարյուրանոցը դրել է քարի վրա ու ով մեկ մետր խորությամբ ծակել է քարը հարյուրանոցի չափով, այն իրենն է եղել:

Մինչև հիմա էլ այդ կարոտը դուրս չի գալիս միջիցս, անցնող գնացք տեսնելիս սիրտս թախիծով է լցվում: Ինչքան էլ երկրներ տեսա, գնացքներով ճանապարհներ անցա, միևնույնն է, էլի անցնող գնացք տեսնելիս հիշում եմ, թե ինչպես էր Համբոն դուրս գալիս տնակից, դիմավորելու գնացքներին, պարզում դեղին դրոշակը և գնացքները սուլում էին ու մեքենավարները ձեռքով անելով, ժպտում էին նրան: Եվ սիրտս անուշ, անհասկանալի թախիծով է լցվում:

Գնում եմ լսելու Երևանի № 10 դպրոցի 9-րդ «Ա» դասարանի գրաբարի քննությունը: Միակ դասարանը Հայաստանի դպրոցներում, որ ունի հայագիտական թեքում:

Մայիսյան պայծառ լույսը պատուհաններից լցվել է ներս և լույսով ողողել հայ մշակույթի երախտավորների դիմանկարները, պատի թերթերն ու մասնագիտական ցուցափեղկերը: Միջանցքում հանդիպում եմ դպրոցի տնօրեն, հայոց լեզվի և գրականության ուսուցչուհի Սեդա Հովհաննիսյանին և նրա հետ մտնում դասարան:

Դասարանում մայիսյան նույն պայծառ լույսն է, լույսի մեջ սեղաններին հակված տասնհինգ աշակերտներն են ու գրաբարի ուսուցիչ, բանասիրական գիտությունների թեկնածու Գևորգ Բաղդիշյանը: Շուրջբոլորը լռություն է: Պատերի տակ, ապակե ցուցափեղկերի մեջ, խնամքով դասավորված են երեխաների աշխատանքները՝ փայտի փորագրություններ, նուրբ ու զարդանախշ ասեղնագործություններ, գորգի, կարպետի նմուշներ: Նախորդ օրը ես արդեն տեսել էի ցուցահանդեսը, տեսել էի աշակերտներին արհեստանոցներում, ուր նրանք սովորելու հետ մեկտեղ, ուսուցիչներից նաև լսում են այս արվեստների ծագման պատմությունները: Եվ հիմա Հայաստանի տարբեր շրջաններից հավաքած ժողովրդական կենցաղի իրերն ու առարկաները, ինչպես նաև բաց կապույտ վարագույրները, հարազատ ու մտերմիկ էին դարձնում դասասենյակն ու մարդկանց, մի տեսակ ընտանեկան հարկի ջերմություն ստեղծում:

«... Երևեցո ինձ զերես քո և լսելի արա ինձ զբարբառ քո. զի բարբառ քո քաղցր է և տեսիլ քո գեղեցիկ...»:

Գրատախտակի մոտ կանգնել է Սուսաննան, թուխ դեմքով, սև աչք-ունքով, սև ծամերով մի աղջիկ, կանգնել, կարդում է ներշնչանքով, կարդում է ոգևորված, շեշտված առոգանությամբ, նույնքան ոգևորված թարգմանում է կարդացածը և անցնում քերականական վարժություններին:

Հաջորդը պատասխանում է Շողիկը, ու նրա շուրթերից հնչում է մեր հնամենի լեզուն, հնչում է անկաշկանդ ու ջահել: Եվ հայաբարբառ ու հայրենաշունչ աղջկա աչքերը փայլում են, փայլում են նստածների դեմքերը. ուսուցիչն ուզում է էլի հարցեր տալ, թեև աղջկա պատասխանով բոլորս բավարարված ենք ու հիացած,

ՇՈՒՇԱՆԻԿ ՂԱԶԱՐՅԱՆ

# «ՃԱՆԱՉԵԼ ԶԻՄԱՍՏՈՒԹՅՈՒՆ ԵՎ ԶԽՐԱՏ...»



բայց որովհետև Տողիկի խոսքը բոլորին հաճույք է պատճառում, ուզում ենք էլի լսել: Քննությանը ներկա է Տողիկի մայրը, մայրն էլ է հուզված: Ու քանի որ գրաբարի դասից անբաժան է ժողովրդական երգը, Տողիկը նաև երգում է.

Սևուկ, սիրուն, շատ խորոտիկ,
Շատ խորոտիկ Մայրո...

Տողիկը երգում է, իսկ դասարանը ձայնակցում է նրան, ձայնակցում են նաև ուսուցիչները: Մտքիս մեջ երգում եմ նաև ես, և քննությունը վերածվում է տոնահանդեսի, երգում ենք բոլորս, ու մեզ հետ երգում է մեր մայրենի, հինավուրց բարբառը...

Պատասխանները հաջորդում են իրար, իրար են հաջորդում երգերը, գրատախտակին են մոտենում Նունեն, Արևիկը, Ներսեսը, Արշակը, Կարինեն, Սեդան... և բոլորը պատասխանում են հրաշալի, բոլորը ստանում են գերազանց:

Գրունիկը, դեղձան մազերով, պայծառ աչքերով մի աղջիկ, երգում է իր երգը.

Թողի տխուր մըր տուն գացի,
Ծամփին խազուն հանդիպեցի,
Խազուն պարև չտվուցի,
Խոտաղներուն շիվարուցի...

Գրունիկը երգում է, խումբը ձայնակցում.

Լի՜... լի՜... լի...

Մայիսյան պայծառ տրամադրությունը փոխանցվում է մեզ, օրը դառնում է երգի նման հուզիչ, իսկ ես մտքիս մեջ ափսոսում եմ իմ անցկացրած պարապ ժամերի համար, ափսոսում եմ, որ կարգին չսովորեցի մեր հին լեզուն և մեկուսի, ինքս իմ ներսում ամաչում եմ երեխաներից...

Քննությունն ավարտվում է, գոհ ու ներշնչված ենք բոլորս, բանահյուսության ուսուցիչը հանձնարարություններ է տալիս իր սաներին. ամառվա արձակուրդներին դպրոցի ուսմասվար և դասարանի դասղեկ Աշոտ Բլեյանի, ավագ ջոկատավար Գայանեի գլխավորությամբ նրանք գնալու են բանահավաքչական արշավների, գնալու են Ղարաբաղ, հետո Ախալքալաք՝ մասնակցելու տերյանական պոեզիայի տոնին: Նրանք գրուցում են, իսկ ես կարդում եմ «Հայ գրի և գրչության փառատոնի» նրանց կազմած ծրագիրը, որ անց էր կացվել ապրիլի 10—22-ը:

1. Օր հիշողության
2. Ասմունքի օր
3. Օր երախտիքի

Բոլոր օրերը հետաքրքիր են, անակրկնելի ու ուսանելի:

Դպրոցի տնօրեն Սեդա Հովհաննիսյանն ասել էր, որ երեխաների մեջ կան հանրապետության տարբեր շրջաններից եկածներ, ինչպես նաև հարևան հանրապետությունից. Գրունիկն ու Ներսեսը Ախալքալաքից են, Տողիկը՝ Թալինից, Լուսինարը՝ Մարտունուց, Սեդան՝ Հրազդանից...

Այդ ե՞րբ էր, երե՞կ էր, թե՞ հազար հինգ հարյուր տարի առաջ, Կորյուն պատմի՞չն էր գրում, թե՞ մեր քերթողներից ուրիշ մի այր. «... Հայաստան աշխարհի զանազան կողմերից ու գավառներից բազմությամբ վեր կենում գալիս, հասնում էին աստվածային գիտության բացված աղբյուրը: Որովհետև Այրարատյան գավառում, թագավորների ու քահանայապետների նստավայրում բխեց հայերի համար աստծո պատվիրանների շնորհը, աղբյուր բխեց այնտեղ...».

Հրաժեշտ եմ տալիս երեխաներին և մի անգամ ևս միջանցքներում ցուցադրված նկարները, ցուցափեղկերն ու պատի թերթերն աչքի անցկացնելով, դանդաղ իջնում եմ աստիճաններով, մտքիս մեջ կրկնելով քիչ առաջ աշակերտներից լսած երդման խոսքերը. «Ճանաչել զիմաստութիւն և զխրատ, իմանալ զբանս հանճարոյ: Հավատարիմ մնալ հայրենի գրին ու գրականությանը: Հավատարիմ մնալ հիշողությանը. զգալ այն արմատներով և փոխանցել սերունդներին...»

ՀԱՅԿ ԽԱՉԱՏՐՅԱՆ

# ԾԻԾԵՌՆԱԿԱԲԵՐԴ

Հազիվ մեկուկես տասնամյակ է, ինչ Երևանի Ծիծեռնակաբերդ բլրի վրա բարձրացել է Մեծ եղեռնի զոհերի հիշատակին նվիրված հուշարձանը և դարձել է ամենայն հայոց սրբավայրը:

Լուսանկարը՝ ՏԻԳՐԱՆ ՓԱՇԱՅԱՆԻ

Ծիծեռնակաբերդ:

Անհիշելի ժամանակներից այսպես է կոչվում Խորում աղբյուրի դիմաց, Հրազդան գետի աջ կողմում բարձրացող բլուրը:

Հայկական շատ տեղանունների նման Ծիծեռնակաբերդն էլ ունի իր անվան պատմությունը, իր ասքը:

Ծիծեռնակաբերդի ասքը առաջին անգամ գրի է առել երևանցի բժիշկ Լևոն Տիգրանյանը:

Ահա այն:

Ծիծեռնակաբերդ բլուրի վրա վաղընջացույն ժամանակներում կար մի բերդ, որը հայոց սիրո աստվածուհի Աստղիկի անունով կոչվում էր Աստղկաբերդ: Գեղապարույր սյունաշարերի վրա բարձրանում էին հզոր աշտարակները, որոնց ամենավերին հարկում բնակվում էին ծիծեռնակները՝ Աստղիկ դիցուհու սուրհանդակները:

Մեծ սիրո կարոտով էր ապրում աստվածուհին: Ծիծեռնակները թռչում էին Հայոց աշխարհի չորս կողմերը և դիցուհու սիրատոչոր հրավերքը տանում երիտասարդներին: Հրապուրվելով այդ հրավերքով՝ երիտասարդները գալիս էին Աստղկաբերդ և սիրավառ պերճ հայացքները ուղղում աստվածուհու պատշգամբին: Աստղիկը յուրաքանչյուրին պարգևվում էր սիրտ խռովող մի ժպիտ: Այդ ժպիտով դյութված, երիտասարդները տարիներով սպասում էին Աստղկաբերդի դարպասների տակ և ծերացած ու ձեռնունայն վերադառնում տուն:

Մի օր էլ հայոց սիրո աստվածուհին ասացին իրար.

— Աստղիկը ոչ ոքի հետ չի ամուսնանա, նա ոչ ոքի չի ընտրի, նրա ժպիտը գեղեցիկ խաբկանք է: Եկեք մոռանանք Աստղկաբերդի ճանապարհը:

Ասացին ու սկսեցին դուռ ու պատուհան փակել դիցուհու սուրհանդակների առջև: Ծիծեռնակները անուրախ լուրերով վերադառնում էին Աստղիկի մոտ, բայց նա նորից էր ուղարկում նրանց՝ կարծելով, թե սիրո ժպիտով կշարունակի դյութել ու հաղթել:

Մի անգամ դիցուհին իր սուրհանդակներին ասաց.

— Հայտնեցեք ամենքին, որ ես կամուսնանամ այն երիտասարդի հետ, ով առաջինը կհասնի Աստղկաբերդ:

Ծիծեռնակները թռան այս ու այն կողմ, դիցուհու ասածը հայտնեցին երիտասարդներին, բայց ոչ ոք չհավատաց:

Այդ ժամանակվանից Աստղիկը փակվեց իր բարձր աշտարակում և այլևս դուրս չեկավ պատշգամբ: Իսկ ծիծեռնակները հավատարիմ մնացին իրենց տիրուհուն և մինչև այժմ էլ շրջում են ամեն տեղ և իրենց ծլվլոցով Աստղիկի գովքն անում:

Արդեն քանի հազար տարի է, ինչ մարդիկ ոչ Աստղիկին են տեսնում, ոչ էլ նրա խռովող ժպիտը, բայց ծիծեռնակները չեն լքել իրենց բույնը: Այդ պատճառով էլ բլուրը կոչվում է Ծիծեռնակաբերդ:

Սա ավանդություն է: Ավանդությամբ չէ, որ Ծիծեռնակաբերդը անունն ստացել է:

Շատ հնում այստեղ բնակավայր է եղել: 1965 թվականին, հուշարձանի կառուցման ժամանակ, շինարարները բլրի վրա գտան 4-5 հազար տարեկան կճուճներ: Սա վկայում է, որ, ընդհանրապես Հրազդանի ձորահովիտը մարդաբնակ է եղել հին-հին դարերից: Այստեղ հանդիպած հնագույն քաղաքակրթության հետքերը հաստատում են, որ Հրազդանի ձորահովտում խոպան անկյուն չի եղել:

10—12-րդ դարերում Ծիծեռնակաբերդի վրա գոյություն է ունեցել համանուն բերդը, որն, ըստ ամենայնի, այդ ժամանակների Երևանի միջնաբերդն էր: Օտար աղբյուրները նույնպես հաստատում են այդ: Բյուզանդացի պատմագիր Կեդրենոսը, խոսելով 11-րդ դարի անցքերի մասին, հիշատակում է Երևանի Խելիդոնիոն բերդը: Խելիդոնիոն հունարեն նշանակում է Ծիծեռնակաբերդ: Բլրի վրա 17-րդ դարում կառուցվել է նոր բերդ, որը 1679 թվականի երկրաշարժից հետո հիմնովին վերակառուցվել է և պահպանվել մինչև 19-րդ դարը:

Մեր նախահայրերը իրենց կառուցած քաղաքներին, ավաններին, ամրոցներին պատահական անուններ չեն տվել: Հայկական լեռնաշխարհում Ծիծեռնակաբերդ անունով շատ ամրոցներ են եղել: Ծիծեռնակաբերդ են կոչել, որպեսզի թշնամիներին հավատեն, թե իրենց ամրոցը անմատչելի է և միայն ծիծեռնակները կարող են ներս թափանցել: Ահա թե ինչու Ծիծեռնակաբերդ բառն ունեցել է նաև անմատչելի իմաստ:

Ավանդական լինի թե իրական Ծիծեռնակաբերդ անունը հոգեհարազատ է աշխարհի բոլոր կողմերում ապրող հայերին:



Լուսանկարը՝ ՏԻԳՐԱՆ ՓԱՇԱՅԱՆԻ

# «ՏԵՍ, ԾԱՂԻ՛ԿԸ ԾԱՂԿԻՆ ՇՈՅԵՑ»

**ԳԱՌՆԻԿ ՄԿՐՏՉՅԱՆ**

Սիփան Շիրազը սովորում է Փանոս Թերլեմեզյանի անվան գեղարվեստի ուսումնարանում: Նրան ճանաչողները գտնում են, որ Սիփանի գունային աշխարհը ինքնատիպ է, զարմանալի, հյուսված՝ երազներից ու պատրանքներից:

Գրողների տանը բացված ցուցահանդեսում մի քանի ինքնանկարներ կային: Նրկարներից նայող աչքերը զննող են, ճանաչել ցանկացող: Այդպես է, մյուս նկարներում ևս երևում է ճանաչելու ձգտումը, «թաքնըված» կարևորը գտնելու ցանկությունը: Այլ կերպ ասած՝ Սիփանն ունի մի թանկագին հատկություն՝ ռրոնող հայացք, նա չի բավարարվում արտաքին նըշաններով:»

Սիփանի նկարները հաճախ չունեն վերջնական ձև ու հասցե, բայց մշտապես առկա է հոգեկան մի գրավիչ շարժում, գունային թանձրացումների հետ մեկտեղ հոգեկան թանձրացումներ:

Սիփանը երկու անգամ նկարել է Կոմիտասին: Տըխուր են Կոմիտասի աչքերը, բայց և հպարտ, վեհ: Նա անցնում է ցավերի, տառապանքների ու նաև՝ լույսի ճանապարհով: Սրբություն է կաթում Կոմիտասի աչքեմից...

Պայծառ ու զուլալ, մաքուր կարոտների գույներ նույնպես կան Սիփանի ներկապնակում: Ահա «Վաղ գարուն», «Սպասում» նըկարները՝ անձնական ու անանձնական կարոտների ներքին, գեղեցիկ միահյուսումներով: Ու ակամա, գուցե նաև նրանից, որ միտքդ անկախ քեզանից զուգահեռներ է փնտրում, մի զուլալ բանաստեղծություն հիշեցի.

Տես ծաղիկր ծաղկին շոյեց.
Աստղր աստղին աչքով
արավ...

Պատանեկան անխառն ապրումներ, զուսպ հույզեր կան «Մովիկի դիմանկարը» և «Երազիս աղջիկը» գործերում: Այս նկարներում առավել քան նկատելի է Սիփանի գունային զգացողությունը, գույնով մտածելու կարողությունը:

Սիփանը աշխատելիս չի շտապում, նկարում է հանգիստ, ուշադիր: Իսկ ի՞նչն է նրան բնորոշը: Նվիրվածությունը ընտրած ճանապարհին:

# ՈՒԺԻՑ ՎԵՐ ԳՈՐԾԵՐ

**ԼՅՈՒԴՄԻԼԱ ՖԱԴԵԵՎԱ**

Նա է պարապ միշտ մնում,
Ով դեռ դպրոց չի գնում։
Իսկ ես պիտի աշխատեմ,
Հոկտեմբերիկ եմ արդեն,
Գործից ես չեմ վախենում,
Գործն է ինձնից վախենում։
Չեմ շալակի ես պարկեր,
Դա իմ ուժից շատ է վեր։
Բայց կարող եմ շոր վերցնել,
Տան հատակը փայլեցնել։
Խանութ վազել, հաց բերել
Եվ ծաղիկները ջրել,
Լուսամուտները բացել,
Ծանր օդը թարմացնել։
Մտածում եմ ես այսպես,
Իսկ մայրիկս, արի, տես՝
Ավարտում է ամեն գործ,
Ու մտնում է խոհանոց։
Նա արել է ամեն բան,
Իսկ ես շատ եմ ուշացել,
Ուժիս գործեր էլ չկան,
Ուժից վերն է մնացել։

Թարգմ. ՆԱՆՍԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆԻ

Նկ. ԱՇՈՏ ԲԱՅԱՆԴՈՒՐԻ

ՎԻԿՏՈՐ ՀՈՎՍԵՓՅԱՆ

ՏԵՐՅԱՆԻ ՏՈՒՆ-ԹԱՆԳԱՐԱՆԸ

Ջավախքում շատ են հիշատակի վայրերը:

Վարևան գյուղում հայ նշանավոր տաղասաց Ղունկիանոս Կարնեցու գերեզմանն է, Կարծախում՝ աշուղ Ջիվանու հայրենական տունը, Ախալքալաքում ծնվել է Դներենիկ Դեմիրճյանը... Փարվանա լճի մոտ մի ժայռ կա, որը կոչում են Թումանյանի քար: Զրույցն ասում է, որ այս քարի վրա նստել է Ջավախք այցելած մեծ Լոռեցին ու մտմտացել. «Բարձրագահ Աբուլն ու Մթին սարեր...» Իսկ Գանձայում՝ Վահան Տերյանի տուն-թանգարանն է:

Անցյալ դարի երկրորդ քառորդին Կարնո մոտերքից Ջավախք գաղթած «թափառական քարոզիչ» Ղազարի որդի տեր Գրիգորը 1852 թվականին ձեռնարկում է գյուղի եկեղեցու կառուցումը: Հոր կիսատ թողած գործը շարունակում է Սուքիաս որդին, ապա եկեղեցու առջևում տուն է կառուցում, որտեղ երեք տարի հետո ծնվում է Սուքիասի որդին՝ Վահանը: Երբ հասնում է ժամանակը, որ Սուքիասի որդիները պետք է տեր կանգնեն հայրական տանը, նրանցից ոչ մեկը գյուղում չէր, բոլորն էլ ուսումնառության էին գնացել:

30-ական թվականներին տները անցնում են ձեռքից ձեռք, այդ ընթացքում քանդվում է Սուքիասի գոմը, որտեղ հարևանների երեխաների հետ Վահանն էլ մասնակցել է տնային թատերական ներկայացումներին: Այնուհետև տներին տիրություն է անում բանաստեղծի քրոջ աղջիկը: Մի որոշ ժամանակ էլ դրանք օգտագործվել են որպես գյուղական փոստային գրասենյակ, փոստի վարիչի բնակարան, ավելի ուշ այստեղ է տեղավորվել գյուղի գրադարանը: 1957 թվականին գանձացիները որոշում են գրադարանը դուրս բերել բանաստեղծի հայրական տունից և այն դարձնել բանաստեղծի տուն-թանգարան:

Դժվար էին տուն-թանգարանի առաջին քայլերը: Ձեռքից ձեռք անցած տունը կորցրել էր իր կահավորանքն ու իրերը, որոնք եղել էին Տերյանի ժամանակ: Նորաստեղծ թանգարանի կոլեկտիվը, գյուղի մտավորականության հետ, մեծ աշխատանք է կատարում տուն-թանգարանի հարստացման համար, նրանց օգնում է գրականության և արվեստի թանգարանը:

... Այցելուները եկեղեցու գավիթով իջնում են դեպի տուն-թանգարան: Եկեղեցու մոտ բանաստեղծի պապի և տատի՝ Գրիգորի և Նախշունի գերեզմաններն են, որոնց կողքին վերջերս թաղվեց Վահան Տերյանի դուստրը՝ Նվարդը: Տուն-թանգարանի առջևում բանաստեղծի կիսանդրին է (գործ՝ Հր. Սաչյանի): Մուտքի միջանցքը շենքը բաժանում է երկու մասի: Դիմացի դուռը տանում է դեպի թոնրատուն: Առաստաղի գերանները մրոտ են: Թոնրի կողքին, թարեքի վրա են կավե պուտուկներն ու պղնձյա ամաններն, որոնք հիշում են մանուկ Վահանին ու նրա հարազատներին: Միջանցքի ձախ կողմի դուռը տանում է սենյակները, որ-

տեղ ապակե փեղկերի տակ դրված են բանաստեղծի անձնական իրերից: Այստեղ են Տերյանի պապի՝ Գրիգորի թազբեհը, պապենական տան կողպեքը, Սուքիասի մեծ պահարանի մեջ կախված են նրա շինելն ու չուխան, այստեղ են նրա տրեխները, լաթերը, նարոտով գործված խուրջինը: Այստեղ են բանաստեղծի արծաթյա շղթան, փոքրիկ դանակը, ծխափողիկ, մատիտներից ու գրիչներից, բանաստեղծի անձնական գրադարանի գրքերից մեկը՝ մակագրությամբ նվիրված իր ՛Ներսես եղբոր կնոջը՝ Սիրանուշին և մեկ այլ գիրք՝ երախտավոր ընծայականով նվիրված Նիկողայոս Մառին: Մի պահ ամեն ինչ այնպես է շնչում, ինչպես Տեր-Սուքիասի ու իրիցկին Ցուղաքերի ժամանակ:

Տուն-թանգարանի կողքին է նորակառույց ցուցասրահը: 1973 թվականին ՎՍՍՀ վաստակավոր նկարիչ Կոտե Չանկվետաձեի գլխավորությամբ վրաց նկարիչների խումբը այնպես է կատարել ցուցասրահի ներքին և արտաքին ձևավորումը, որ այն նույնպես ունի տերյանական շունչ:

Այստեղ ցուցադրվում են Տերյանի կյանքին ու գործունեությանը վերաբերող տարբեր ժամանակների ավելի քան 1500 ցուցանմուշ, վավերաթղթեր ու լուսանկարների պատճեններ:

Վերջին տարիներին կապ պահպանելով մեր երկրի այն վայրերի հետ, որտեղ ապրել է Տերյանը, թանգարանը այդ գործի մեջ ներգրավեց բանասեր Լեոնիդ Պոլշակովին (Օրենբուրգ), գավառագետ Ս. Կոպելնիկովին (Աստրախան) և ուրիշների, որոնք հետաքրքիր հուշեր հավաքեցին Տերյանի օրենբուրգյան ու աստրախանյան տարիներից:

Եվ վերջապես, տուն-թանգարանի ամենամասսայական գործը պոեզիայի տերյանական օրն է, որը տոնվում է 1967 թվականից ի վեր:

Ամեն տարի հուլիսի նախավերջին կիրակի օրը այստեղ հավաքվում են բանաստեղծի հազարավոր երկրպագուները, տուն-թանգարանի սրահներով անցնելուց հետո գնում են գյուղից դուրս, բացօթյա կառուցված բեմի չորսբոլորը, լեռնալանջերից ծաղկաբույր բերող սյուքի հանդիման, ուր հնչում է երգ, երաժշտություն, բանաստեղծները ոգեշունչ խոսք են արտասանում և կարդում իրենց նոր բանաստեղծությունները:

**ՍՏԵՓԱՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆ**

## ԽԱՂ

Ձմեռ եկավ,
Բուքը պարեց,
Փաթիլն իջավ
Աչքով արեց
Աղջիկներին՝
Կարմրաթշիկ,
Տղաներին՝
Կարմրաքթիկ:
— Ի՞նչ եք կանգնել,—
Ասաց,— վազեք,
Դե, խաղացեք,
Ուրախացեք...
... Վազվզեցին,
Ձնագնդին
Գլորեցին
Թաթիկներով
Փոքրիկ, մրսած:
Տուն գնացին
Լավ տաքացած:

## ԿԵՏՆ ՈՒ ԱԼԻՔՆԵՐԸ

Կետը պոչը թափահարեց,
Խաղաղ ծովը ալեկոծվեց,
Ալիքները՝ բարձր սարեր,
Գլորվեցին, բարձրացան վեր,
Հսկա կետից հեռու փախան,
Հասան ափը կոհակ դարձան,
Խաղաղվեցին, հանդարտվեցին,
Դեպքի մասին զրույց բացին:
Ասին՝ կետը հրեշ է մի.
Թե ուզենա
Ծովը մեկից մի կում կանի:



ԶՈՐԱՅՐ ԽԱԼԱՓՅԱՆ

# Նշանավոր ասպետն ու իր հետևորդները

(Սերվանտեսյան ընթերցումներ)

(Սկիզբը № 11-ում)

Որոշ ժամանակ անց պահակազորի զինվորները հավաքվեցին ի մի և սկսեցին փախստականների հետապնդումը: Մեծ դժվարությամբ հաջողվեց որսալ մի մասին միայն, ոմանք բռնվեցին կրկին ոճրագործությունների, գողությունների ու ավազակության պահին, մի մասին էլ հա-

ջողվեց թաքնվել, ծպտվել և անհնար եղավ նրանց գտնելը:

Բռնվածները կրկին կանգնեցին դատարանի առջև, կրկին սկսեցին նրանց հարցաքննել և դատել, բոլոր հին ու նոր մեղքերին ավելացնելով պահակազորին ծեծելու, շղթաները ջարդելու ու փախչելու հանցանքը: Սակայն նրանք միաբերան նույնն էին ասում, որ մեղք չունեն, որ այդ ամենն արել են երկրի ամենաբարձրահասակ ու ամենացածրահասակ այն երկու մարդը, որոնք այժմ բոլորին են հայտնի, և որ պետք է նրանց դատել և ոչ թե իրենց:

Նրանցից ամենաճարտարը, որ նախկին ուսանող էր և գիտեր մարդկային լեզվով արտահայտվել, խոսեց բոլորի անունից.

— Պարոն դատավոր, նրա հանցանքը համայն մարդկությանն է հայտնի: Նա կոտորեց հովվի ոչխարներր և մնաց անպատիժ: Կիսամեռ արեց ամեն սափրիչին, իր ձիով ոտնատակ արեց եկեղեցու սպասավորներին, հիմնովին ջարդուփշուր արեց տիկնիկային թատրոնը, ո՞ր մեկը թվարկեմ, հետաքրքրվողները թող վերցնեն գիրքը և կրկին կարդան: Նրա ամեն արկածը մի հանցագործություն է: Գիշերում է իջևանատներում և առավոտյան առանց վճարելու փախչում գողի պես, դեռ ավելին՝ սպառնում է իջևանատիրոջ գլուխը ջախջախել նիզակի կոթով: Մի՞թե հարկ կա թվարկելու նրա ավազակությունները մեկ առ մեկ... Իսկ ահա այս խեղճ մարդն, օրինակ, դատապարտվեց այն պատճառով, որ իր երեխաների մերկությունը ծածկելու համար ստիպված էր գողանալ հարևանի մի կողով լվացքը: Այն մարդը տաժանակրության է դատապարտվել հարևանից մի հաց գողանալու համար, այն մյուսը՝ բարկության պահին մուրճով հարվածել է իր վարպետի ուսին, որը տանջում էր նրան չարչարելով: Վարպետին ոչինչ չի եղել, իսկ սրան ուղարկել են թիարան: Իհարկե, ոչ ոք կամովին թիարան աշխատելու չի գնա, պետք է բարձր ռոճիկներ նշանակել: Եվ այս խեղճ մարդկանց մանր զանցանքների համար ուղարկում են այդ դժոխային գործին, փաստորեն նրանց դարձնում ձրի բանող ստրուկներ... Հիմա իրենք դատեք, պարոն դատավոր, ո՞վ է իսկական ավազակը: Բովանդակ երկրում ոչ ոք այդ տրտում դիմակավոր ասպետի չափ չարագործություն, անօրենություն և ավազակություն չի արել, ամենուր իր ճանապարհին նա ջարդում, փշրում և ծեծում է ամեն մարդկանց և մնալով անպատիժ՝ շարունակում իր ճամփան, իսկ մենք պիտի կրկին բանտ ընկնենք: Մի՞թե սա է այս երկրի դատարանը և մի՞թե այսպիսինն են այս երկրի օրենքները:

Դատավորն ասաց, որ ինքն էլ է ճանաչում այդ մարդուն, նա խելագար է, ինքն իրեն փրկիչ է երևակայում, նա ոչ միայն արդարություն և մարդասիրություն է քարոզում, այլև սուրը ձեռքին պայքարում է դրա համար, մի՞թե դա ծիծաղելի չէ:

— Ծիծաղելի՛,— բացականչեց ուսանողը:— Զգո՛ւյշ, որ հետո լաց չլինեք: Այդ դոն-Չարագործը, այդ դոն-Երկերեսանին, այդ դոն-Ավազակը մոլորեցրել է խեղճ գյուղացուն, կտրել նրան վար ու ցանքից, իր ընտանիքի հոգսերը հոգալուց, և տանում է իր հետ՝ նրան թագավորություններ, կղզինե՞ր և արքայավայել կյանք խոստանալով: Ապագա թագավորն առայժմ նրան ծառայություն է անում: Նրա արկածները երկրին շատ թանկ կնստեն:

Դատավորը կրկնեց իր խոսքերը, որ նա անմեղսունակ է, ամեն ինչ իր հիմարության պատճառով է անում, նա իր արարքի իմաստն անգամ չի հասկանում, մոլորյալ մի մարդ է նա, առաջադիմություն կոչելով՝ մարդկությանը ետ, դեպի անցյալը, ասպետական ժամանակներն է ուզում տանել: Պարզ ասած՝ նա խելագար է:

— Պարոն դատավոր,— ասաց ուսանող դատապարտյալը,— եթե մեկ ուրիշը ծեծեր տերունական պահակազորի զինվորներին և ազատ արձակեր արդարության օրենքով դատված չարագործներին, այդ չ՛սված, չտեսնված հանցանքի համար մեկ ուրիշին տասը հազար մտրակի հարվածից հետո ցմահ կդատապարտեին թիարանում իր պատիժը կրելու, մինչդեռ այդ դոն-Անմեղսունակը հենց այս պահին էլ ով գիտի որտեղ շարունակում է իր ավազակությունները: Կարդացեք գիրքը, նորից կարդացեք, ամբողջ երկու հատոր արկածներ, չարագործություններ, թալան, ձրիակերություն և ոչ մի պատիժ, միայն նրա համար, որ ճարտար լեզու ունի, մարդասիրություն և արդարություն է քարոզում այդ դոն-Դերասանը: Մի՞թե այդքանից հետո կարելի է հավատալ, որ աշխարհում արդա-

բություն կա:

Ուսանող ավազակի խոսքերը ոչ միայն նրան չօգնեցին, այլ հակառակը, որպես արդարադատությանն ուղղակի ու անուղղակի հայհոյողի՝ նրան բոլորից ավելի խիստ պատիժ նշանակեցին՝ հինգ հարյուր մտրակի հարվածից հետո ցմահ թիաբան:

Պատիժը իրագործելիս, հինգ հարյուր հարվածի կեսին էլ չհասած՝ հոգին ավանդեց, նրան տարան ու նետեցին մի փոսի մեջ, նույնիսկ հարկ չհամարեցին կարգին հողով ծածկելու: Մինչդեռ նա միայն ուշակորույս էր, գիշերն ուշքի եկավ, զգաց, որ բանտում չէ, այլ ինչ-որ տարօրինակ մի խցում, որը սառն էր ու ճնշում էր վերևից: Մեծ ճիգերով նա շարժեց ձեռքերը, հողը ետ տվեց և կեսգիշերին գերեզմանից ելնելով՝ տեսավ, որ ինքը մի ամայի դաշտում է:

Որոշ ժամանակ անիմաստ դեգերելուց հետո՝ նա հասավ մի գետակի, ծեծված մարմինը լվաց, ընդարմությունն անցավ, ուժերը վերականգնվեցին և կրկին ինքն էր ու իր դեմ ողջ աշխարհը:

— Պետք է բեղեր պահել և միրուքը երկարացնել,— ասաց նա ինքն իրեն:

Երբ բեղերն ու միրուքը սկսեցին երկարել, նա մի ձի գողացավ և այդ ձիով գնաց նույն տեղից շատ հեռու, որ շրջակայքում ձին ճանաչող չլինի: Ձեռք գցեց նաև ասպետական զենք ու զրահ, որ ճիշտն ասած մեծ գին չուներ, որովհետև այդպիսի աղբն այլևս ոչ մեկին պետք չէր: Մնաց ամենադժվարինը, ու այս մեկի համար խելքի ճարպկություն և լեզու էր պետք, որ նա ուներ և փորձով էլ իմաստնացած էր արդեն:

Մի գյուղացի իր միակ ավանակը լծած արորին՝ իր մի թիզ քարքարոտ հողն էր վարում: Միրուքավորված, զրահավորված ասպետը մոտեցավ նրան, ողջունեց և ասաց.

— Խե՜ղճ մարդ, ինչպես այս մի ավանակով և այդ մի կտոր հողով դու պիտի կերակրես մի տուն լիքը մանուկներ:— Երկար խոսեց, մոլորեցրեց գյուղացուն, վերջում ասաց.— Թող քո այդ արորն ու արի իմ ետևից: Ասպետական խոսք եմ տալիս քեզ, եղբայր, մի որևէ կղզի կամ թագավորություն ձեռք գցել ու հանձնել քեզ:

Նա այնպես համոզեց, խելքահան արեց, որ գյուղացին հավատաց նրան և իր ավանակին նստելով՝ իրեն հանձնեց ճակատագրի քմահաճույքին, գնաց ասպետի հետ, որպես նրա զինակիրը:

— Պարոն,— ասաց գյուղացին,— իսկ ի՞նչ է քո անունը:

— Ես, ինչպես ասացի, պատկանում եմ թափառական ասպետների ուխտին: Այժմ աշխարհը կարիք չունի ոչ մի բանի այնքան, որքան թափառական ասպետների: Կարող ես ինձ անվանել տրտում պատկերի ասպետ:

Գյուղացին ասաց.

— Ես լսել էի որոշ բան, չէի հավատում, հիմա աչքովս տեսա: Այո, ինձ նման չքավոր մարդիկ վաղու՜ց էին սպասում ձեզ նման արդարամիտ ասպետներին: Բայց նայեք, հա՜, տեր իմ, ինչ արկած կուզեք փնտրեք: Ձեր գործն է, բայց խոստացած թագավորության մասին չմոռանաք: Ինչքան էլ փոքր թագավորություն լինի, հազար անգամ լավ է, քան իմ մի թիզ հողն ու չարքաշ կյանքը: Թագավորություն էլ չլինի, գլուխը քարը, համաձայն եմ որևէ կղզու վարչապետ լինել:

Դրա վրա ասպետը բացականչեց.

— Երանի՜ նրան, որ չունի և պիտի ստանա: Երանի՜ նրան, որ ստորացված է և պիտի մխիթարվի: Երանի՜ նրան, որ քաղցած է և պիտի հագենա: Երանի՜ նրան, որ ծառա է և պիտի տեր դառնա:

— Եթե չեմ սխալվում, տեր իմ, այդ ամենն ինձ է վերաբերում:

— Այո, միայն քեզ:

— Ուրեմն, կարծես դուք երանի եք տալիս ինձ:

— Որովհետև, իմացած լինես, դու աշխարհի ամենաերջանիկ մարդն ես լինելու, քո բոլոր իղձերը պիտի կատարեմ:

Այսպես զրուցելով՝ մի տեղ նրանք հանդիպեցին հողմաղացների:

— Եթե չեմ սխալվում, տեր իմ,— ասաց զինակիրը,— դուք հիմա հողմաղացները պիտի հրեշների տեղ դնեք և հարձակվեք նրանց վրա:

Ասպետը նայեց շուրջն ու ասաց.

— Ի՞նչ իմաստ ունի, եթե ոչ մի հանդիսատես չկա: Դրա դարն անցավ:

Երեկոյան նրանք հասան մի իջևանատուն: Ասպետն ասաց, որ դա կախարդված ամրոց է և այստեղ հրաշքներ պիտի կատարվեն, ինչպես ամեն մի կախարդված ամրոցում: Զինակիրն ասաց, որ դա սովորական իջևանատուն է, բայց ասպետը սաստեց նրան, ասելով, որ նա ասպետական գործերից ոչինչ չի հասկանում, ավելի լավ է լռի:

Իշխանատերը չկար, կինն էր, նրանց
ներս չէր թողնում, ասաց, որ ամուսինը
խստիվ արգելել է թափառական ասպետ-
ներին գիշերելու ընդունել:
— Գնացե՛ք, կորե՛ք, չքվե՛ք,— գոռգո-
ռում էր նա:— Ամբողջ երկիրը լցվել է
ասպետներով: Ուրիշ գործ չունենք, ձեզ
նման ծրիակերներին կերակրենք, անկո-
ղին տանք, վերջում էլ որևէ հիմարու-
թյուն անեք, ջարդեք փշրեք մեր ունեցածը:
Դրան ասպետը գրքի խոսքերով պա-
տասխանեց.
— Հավատացե՛ք, չքնաղ տիրուհի, դուք
պետք է ձեզ երջանիկ համարեք, որ ինձ
նման մի ասպետի ապաստան եք տվել
ձեր դղյակում:
— Լսել ենք, դա էլ ենք լսել: Չքվե՛ք:
Այստեղ ասպետը իջավ իր ձիուց և
ծնկի գալով իշխանատիրուհու առջև, ձեռ-
քը սրտին՝ ասաց նրան.
— Ինչպե՛ս ես արժանին հատուցեմ,
չքնաղ ազնվազարմ տիկին, այս բարձր
ողորմածության համար, որ պարգևում եք
ինձ ձեր աննման գեղեցկությամբ:
Ասպետական լեզվով նա շատ երկար
խոսեց, մինչև տիկնոջ սիրտը փափկեց:
— Լա՛վ, ասաց նա,— միայն մառա-
նում տեղ կտամ, գիշերեցեք ու չքվեք:
Ասպետն ու զինակիրն այնքան հոգնած
էին, որ իսկույն համաձայնեցին: Մառան
մտնելով՝ ասպետն իր զինակրին ասաց,
որ այս կախարդված ամրոցում հնարա-
վոր է, որ գիշերը անհավատալի բաներ
կատարվեն, թող զինակիրը չզարմանա:
Հենց այստեղ շարված էին գինու մեծա-
մեծ տկեր: Ասպետն ասաց, որ դրանք
կերպարանափոխված հրեշներ են, նրանց
հետ ինքը պիտի մենամարտի: Այդպես է
գրված նշանավոր ասպետի մասին գրքում:
Զինակիրը սարսափեց, ասաց.
— Տեր իմ, բացեք ձեր աչքերը, դրանք
գինով լիքը տկեր են, ուրիշ ոչինչ:
— Այնքան գինի, այնքան մոտիկ և մի
գավաթ անգամ մեզ չի հասնում: Մի՞թե
սա հյուրասիրություն է, մի՞թե սա արդա-
րություն է,— ասաց ասպետը: — Ոչ, սա
կախարդված ամրոց է և այս տկերն ան-
շունչ հրեշներ են: Մի գավաթ գինու հա-
մար նրանք կարող են մարդու բանտ նե-
տել, հետո բանը կհասնի նրան, որ քեզ
ողջ-ողջ կթաղեն գերեզմանոցում:
Քիչ անց աղախինը բերեց մի կուժ ջուր
և մի քիչ ուտելիք, և ասաց, որ սսկվեն
ձայն չհանեն, իշխանատերը վերադարձել
է, եթե իմանա՝ նրանց դուրս է շպրտելու,
որովհետև, ասաց աղախինը, այդ անիծ-
ված թափառող ասպետները խեղճ մար-
դուն լրիվ սնանկացրել են:
— Մի՞թե իմ տիրոջից բացի թափառող
ասպետ էլի կա,— զարմացած հարցրեց
զինակիրը:
— Շնից շատ,— պատասխանեց աղա-
խինը:— Իմ տերն ասում է, որ դրանք
բոլորը ավազակներ են, հիմա ապրելու
հեշտ ձև են գտել:
Զինակիրը նրան ասաց.
— Իմ տերը դրանցից չէ, նա ազնիվ ու
վեհանձն թափառական ասպետ է, շատ
շուտով նա կգրավի որևէ կղզի կամ թա-
գավորություն և ինձ վարչապետ կամ իշ-
խանավոր կդարձնի:
Աղախինը կշտամբանքով շարժեց գլու-
խը, հառաչելով ասաց.
— Խեղճ մոլորյալ, բոլորն էլ նույնն են
զառանցում:
Լուսադեմին զինակիրն արթնացավ իր
տիրոջ աղաղակներից.
— Գո՛ղ, ավազա՛կ, դավաճա՛ն,— գո-
ռում էր նա՝ սուսերով աջ ու ձախ հար-
վածներ հասցնելով,— ձեր խարդավանք-
ներն իզուր են, դուք իմ ձեռքից չե՛ք
պրծնի:
Գինու տկերից առվակներով վազում էր
կարմիր գինին, իսկ ասպետը շարունա-
կում էր խոցոտել անվնաս մնացածները՝
հավանաբար նրանց հրեշի տեղ դնելով:
Ողջ մառանը ծովի պես լցվել էր գինով:
Ձայնի վրա ներս ընկան իշխանատերը,
նրա կինը, աղախինը, ևս մի քանի հոգի:
Իշխանատերը բռունցքներով նետվեց աս-
պետի վրա, բայց նա կանգ չառավ, մին-
չև չխոցոտեց վերջին տիկը ևս:
Բոլորը լողում էին գինու ծովի մեջ, ի-
շխանատերը գոռգոռում ու լալիս էր խե-
լագարի պես, երդվում էր, որ առանց
պատճառած վնասի հատուցումը ստանա-
լու նրան բաց չի թողնի, կսպանի կամ կը-
հանձնի ոստիկանության ձեռքը:
Զինակիրը փորձեց միջամտել, ասելով,
թե իր տերը իշխանատունը կախարդված
ամրոցի տեղ է դրել, իսկ գինու տկերը
նրա աչքին հրեշներ են երևացել, նա ան-
մեղսունակ է, նրան թվացել է, թե բարի
գործ է անում՝ մաքառելով չար հրեշների
դեմ:
Ասպետն իր սխրանքն ավարտած հա-
մարելով, ծնկի իջավ իշխանատիրոջ կնոջ
առջև, ասաց.
— Ձերդ մեծություն, ազնվազարմ տի-
կին, դուք այսուհետև ձեզ զգացեք ապա-

հովության մեջ, առանց երկյուղ կրելու այդ ստոր էակներից, որոնց ես վերջ տվի ազնիվ մենամարտում,— նա խրոխտ մի շարժում արեց՝ ձեռքը մեկնելով դեպի տղեկերը, որոնց պարտությունը դատարկվելուց հետո սմքել ու այլանդակ ձևեր էին ընդունել:

— Տեսնո՞ւմ եք, իմ տերը դեռ կախարդանքի մեջ է, ձեր տիկնոջը թագուհու տեղ է դնում, մինչդեռ նրանից ինչ թագուհի, վրայից խոզաճարպի ու խաշած ոլոռի հոտ է փչում:

Շատ երկար տևեց այս խոսքակռիվն ու վեճը: Այդ ժամանակ, ինչպես գրված է քսանվեցերորդ գլխում, իջևանատանը գիշերած երկու հոգի օգտվելով առիթից ցանկացան առանց վճարելու ճողոպրել: Իջևանատերը բռնեց նրանց օձիքը և խեղդելով պահանջեց վճարը: Սրանք վճարելու փոխարեն այնպիսի մի ծեծ տվին նրան, որ սա գոռում ու օգնություն էր կանչում: Հիմա էլ առիթից օգտվելու հերթը ասպետին հասավ, նա հեծավ իր ձին ու ճամփա ելավ: Իջևանատիրոջ կինը բռնեց նրա ձիու ասպանդակը, աղերսեց ասպետին.

— Օգնեցեք, տեր իմ թափառական ասպետ, խլեք նրանց ձեռքից իմ խեղճ ամուսնուն, որը ոչ մի մեղք չունի և նրան այնպես են թակում անիրավները, ասես ձավար են ծեծում:

Ասպետը սանձը քաշեց և վերևից, իր նախորդի խոսքերով պատասխանեց.

— Ես շտապում եմ և վայել չէ ինձ սուր բարձրացնել ստոր ամբոխի վրա:

— Մի՞թե այդքան կարևոր գործ է սպասում ձեզ, քան մի թշվառ ու անմեղ մարդու գող-ավազակների ձեռքից փրկելը, որոնք ոչ միայն գիշերավարձը չեն տալիս, այլ տեսեք ինչպես են քոթակում իմ խեղճ մարդուն: Տեր իմ թափառական ասպետ, աղաչում եմ, փրկեք նրան, որին դուք այդքան վնաս հասցրիք, և միայն այդքանը բավական էր նրան սպանելու համար:

— Իմացած եղեք, տիկին, իմ կոչումն է օգնել տկարներին, կեղեքվածների վրեժը լուծել և պատժել ստորությունը,— ասաց նորընծա ասպետը:— Դրա մասին գիրք կա, ես ոչ մի խոսք ինձնից չեմ ասում, ես խոսում և գործում եմ ըստ այդ ասպետի խոսքերի ու գործերի: Բացեք գիրքը և կարդացեք, տվյալ դեպքում ես վարվեցի ճիշտ այնպես, ինչպես վարվել է նշանավոր թափառական ասպետը հենց





այս նույն տեղում: Նրան ներեցին և ծիծաղեցին նրա արարքների վրա, իսկ ինչո՞ւ ես պետք է վճարեի կամ միջամտեի ծեծկռտուքին:

Մինչ իջևանատիրոջը ծեծում էին, իսկ նրա կինը մազերն էր փետում՝ ասպետը խթանեց իր ձին և հեռացավ իր զինակրի հետ:

Ճանապարհին զինակիրն ասաց.

— Քանի որ ես այդ մարդկանց դեմքերով ճանաչեցի, տեր իմ թափառական ասպետ, ապա համարձակվում եմ ասել, որ ոչ մի կախարդանք էլ չի եղել և այդ իջևանատունն էլ երբեք ամրոց չի եղել:

— Քեզ նման անպիտանը ողջ երկրում մեկ էլ դու ես,— ասաց ասպետը զայրույթով:— Երդվում եմ, որ քեզ պատառ-պատառ կանեմ՝ բոլոր զազրախոս զինակիրներին խրատ լինելու համար:

Զինակիրը շատ վախեցավ, բայց և ավելացրեց.

— Իսկ հսկաներ ու հրեշներ կոչվածները պարզապես գինու տկեր էին, հոսածն էլ ոչ թե արյուն էր, այլ գինի:

— Ահա ինչ կասեմ քեզ նույն գրքի խոսքերով. «Ներիր ինձ, բայց դու պարզապես տխմար ես»: Ասպետը շատ փառավոր խոսքեր ունի, այնուամենայնիվ, ինձ ամենից շատ դուր է գալիս նրա հետևյալ համոզմունքը. «Եվ թող իմ մասին ո՛չ մեկը ո՛չ հիմա և ո՛չ հետագայում չասի, թե որևէ մեկի արցունքն ինձ ետ պահեց ասպետական իմ պարտքը կատարելուց»:

— Տեր իմ,— ասաց զինակիրը,— իմ գործը չէ խառնվել ասպետական գործերին, ես դրանից ոչինչ չեմ հասկանում: Կուզեք գինու տկերը ծակծկեք, կուզեք գարու տոպրակները պատառոտեք, ում գլխին կուզեք՝ նիզակի կոթով հարվածեք, դա ձեր իմանալու բանն է: Ինչ էլ անեք, ես հավատարմորեն կծառայեմ ձեզ, միայն խոստացած կղզին կամ որևէ թագավորություն ձեռս ընկնի և ինչքան հնարավոր է՝ շուտ:

— Ապրես: Դու միայն դրա մասին մտածիր, միտքդ ուրիշ բաներով մի զբաղեցրու,— ասաց ասպետը:

Այդպես խոսելով նրանք գնում էին, երբ ճանապարհին ինչ-որ մարդիկ հայտնվեցին: Առջևից, ջորիների վրա, գնում էին երկու վարդապետ՝ գլխներին հովանոցներ բռնած, իսկ նրանց ետևից ընթանում էր մի կառք՝ շրջապատված ձիավորներով: Կառքի մեջ հարուստ մի տիկին էր նստած:

Երբ նրանք բավականին մոտ էին, ասպետը մարտական աղաղակով ասաց.

— Ձեզ եմ դիմում, դժոխքի ծնունդներ, իսկույնևեթ ազատ արձակեք իշխանուհուն, այլապես պատրաստվեք ձեր անարգ մահը ընդունել թափառական ասպետի ձեռքով:

Վարդապետներից մեկը ասաց.

— Պարոն թափառական ասպետ, այն, ինչ պետք է ձեզ, արդեն չկա: Դուք մեզ հանդիպած թվով հինգերորդ կամ վեցերորդ թափառական ասպետն եք, որ պաշտպանում եք թշվառներին, անարդարության զոհերին ու հարստահարվածներին: Ինչ ունենք-չունենք՝ վերցրին: Չգիտեմ տիկնոջ մոտ որևէ բան մնաց, թե՞ ոչ: Սակայն նրան համարյա մերկացրին:

— Հարմար չէ ձեր դասի մարդուն այդպես անպատկառ խոսել տիկնոջ մասին,— ասաց ասպետը:— Ի՞նչ է նշանակում՝ համարյա մերկացրին:

— Նրա վրա միայն մի շոր էին թողել: Դրա համար եմ ասում՝ համարյա: Ներեցեք: Նրա բոլոր զարդերը տարան:

— Դուք ինձ անուշ խոսքերով չեք խաբի, ես ձեզ լավ եմ ճանաչում, ստոր սրիկաներ:— Գրքի սույն խոսքերի հետ ասպետն այնպիսի սաստկությամբ հարձակվեց առաջին վարդապետի վրա, որ վերջինս վախից ցած ընկավ ջորուց, իսկ մյուս վարդապետը շրջեց իր ջորու գլուխն ու փախավ:

Զինակիրը շտապ վրա հասավ ու սկսեց ընկածի շորերը հանել: Այդ ժամանակ մոտ եկան ծառաները և հարցրեցին, թե ինչո՞ւ է նա եկեղեցու ծառայի շորերը հանում: Զինակիրն այդ տգետներին բացատրեց, որ ըստ ասպետական օրենքների պարտված մասի ունեցվածքը զինակրի ավարն է:

Այստեղ ծառաները նրա բացատրածը համոզիչ չհամարելով՝ հարձակվեցին նրա վրա, իսկ ասպետն էլ՝ ծառաների վրա: Ծառաները հասկացան, որ կարող է իսկական արյունահեղություն լինել, մինչդեռ ասպետը դրա մասին չէր մտածում: Ուստի ողջախոհները նահանջեցին խելագարության առջև ու ստացվեց, որ ասպետը միայնակ հաղթեց բոլորին:

Խելագար ձևանալու օգուտն ասպետը վաղուց էր հասկացել, նա գիտեր, որ մարդիկ ողջախոհ են և տեղի կտան, ընդունելով, որ իբր ինքը «չգիտի ինչ է անում»:

(Շարունակելի)

# Արդյո՞ք ես ընկերասեր եմ

Երևանի № 78 դպրոցի 6-րդ դասարանի աշակերտների շարադրություններից

Ես, Արամը և Վարուժանը մտերիմ ընկերներ էինք: Ապրում էինք նույն շենքի նույն հարկում: Միասին էինք պատրաստում դասերը, միասին հաճախում դպրոց:

Բայց Արամը փոխեց իր բնավորությունը և վարմունքը ընկերների նկատմամբ: Նա ծանոթացել էր թուղթ խաղացող մի տղայի հետ: Սկսեց դասերի ժամանակ խանգարել իր ընկերներին, վերցնում էր նրանց մատիտները, իսկ եթե որևէ մեկը գանգատվում էր, ծեծում էր:

Վարուժանը իր ծննդյան օրը ծնողներից նվեր էր ստացել մի գեղեցիկ ժամացույց:

Արամը տեսավ Վարուժանի թևին փայլող ժամացույցը և խլեց, դրեց գրպանը: Վարուժանը կարծեց, թե Արամը կատակում է, բայց Արամը նրան վիրավորեց և ժամացույցը չվերադարձրեց: Վարուժանը շփոթված, Արամին հարցրեց, թե տանը ինչ պատասխան տա: Արամը դարձյալ նրան վիրավորեց և ասաց, որ եթե Վարուժանը բերանից մի բան թռցնի, գործ կունենա բռունցքի հետ: Այս ամենին ներկա էի ես և լռեցի:

Դրանից հետո էր, որ հորս հեռու ազգականը ինձ մի գեղեցիկ ինքնահոս նվիրեց:

Դպրոցում դասամիջոցին Արամը տեսավ, ձեռքիցս վերցրեց և քմծիծաղով դրեց գրպանը: Ես հարցրեցի, թե տանը ինչ ասեմ, նա վիրավորեց ինձ և քմծիծաղ տալով ուզեց հեռանալ:

Այս ամենին ներկա էր Վարուժանը: Նա չհամբերեց, նրա աչքերը հանկարծ փայլեցին: Նա երկու ձեռքով բռնեց Արամի օձիքից և պահանջեց, որ ետ վերադարձնի ինքնահոսը: Արամը առանց որևէ խոսքի ետ վերադարձրեց:

Վարուժանը ասաց, որ թող նա այլևս մեզ հետ ընկերություն չանի: Ես ամոթից չէի կարողանում նայել Վարուժանի աչքերին: Ես Վարուժանին պարտք մնացի, մի այնպիսի պարտք, որը հատուցել կարելի է միայն նույնպիսի արարքով:

ՀԱՄԼԵՏ ՔՈՉԱՐՅԱՆ

Սևանի ափին էր:

Մի խումբ երեխաներ հավաքված զրուցում էինք, ծաղիկների մեջ պառկում, խաղում և կատակներ անում: Հանկարծ երկնքից կռունկների ձայն լսվեց: Վերև նայեցինք՝ տեսանք կռունկները շարվեշարան հյուսիսից գալիս ու դեպի հարավ էին գնում: Նրանցից մեկը խմբից բաժանվելով ցած իջավ: Այդ որ տեսավ ընկերը, նույնպես անջատվեց երամից, եկավ, լճի վրա պտույտներ գործեց, ճչաց, կանչեց, բայց ոչինչ չօգնեց: Ընկերը փռվել էր լճափին, մեզնից քիչ հեռու ու խղճալի ձայներ էր հանում: Մենք չհասկացանք՝ թև՞ն էր վնասվել, հիվա՞նդ էր, թե՞ ուժասպառ էր եղել երկար ճանապարհորդությունից: Վերևում պտտվող կռունկը մնացել էր մոլորված՝ խմբի՞ն հետևի, թե՞ իջնի ընկերոջ մոտ: Նա գիտեր, որ եթե երամը սարն անց կացավ՝ իր բանը վերջացած էր: Բայց նա այնուամենայնիվ չուզեց թողնել հիվանդ ընկերոջը ու իջավ նրա մոտ: Կռունկը ճչում էր: Մենք նայեցինք հետաքրքրությամբ և տեսանք, որ առողջ կռունկը կտուցով վեր է քաշում իր ընկերոջը ու ձայն է տալիս, մղկտում, համոզում էր երևի, որ օդ բարձրանան, գնան հասնեն իրենց երամին:

Մենք մտածում էինք, որ կան մարդիկ, հազար անգամ խելոք ու գիտակից այդ կռունկից, բայց սիրտ չունեն, ընկերոջ համար իրենց կյանքը վտանգի չեն ենթարկի, ինչպես այդ անլեզու արարածը:

ՆՈՒՆԵ ԱՌԱՔԵԼՅԱՆ

Դպրոցում հաճախ եմ լսում այսպիսի խոսակցություն (երբեմն ես էլ եմ մասնակցում)։ Մեկը համադասարանցուն է մոտենում, խնդրում տետրը, որպեսզի արտագրի տնային աշխատանքը։ Ի՞նչ եք կարծում, ի՞նչ է պատասխանում ընկերը։ Երևի մտածում եք, թե նա տետրը տալու փոխարեն դասն է բացատրում։ Ոչ։ Չարաչար սխալվում եք։ Ընկերը տալիս է տետրը և չի էլ մտածում բացատրելու մասին։ Եթե չտա, համադասարանցին կխռովի, իսկ տետր, համենայն դեպս, կճարի ուրիշից։ Իսկ ինքը ինչո՞ւ «վատամարդ դառնա», երբ պատահում է, որ ինքն էլ է արտագրում։

Ցավոք սրտի, այսպիսի դեպքերի հանդիպում ենք ամեն օր։ Ահա մի ուրիշ օրինակ։ Ուսուցիչը նոր դաս է հանձնարարել, որոշ հարցեր աշակերտներին պարզ չեն, կան մի քանիսը, որոնք հասկացել են։ Եվ ահա երեխաները խնդրում են, որ նրանք բացատրեն իրենց։ Ինչպե՛ս չէ, կբացատրեն։ Բացատրեն, որ մյուսները ճիշտ պատասխանեն, որ ուսուցիչը նրանց բարձր գնահատի։ Ուրիշ ի՛նչ կուզեին։

Ահա այսպես են մտածում որոշ աշակերտներ, այդպիսիները շատ չեն, բայց մի՞թե ավելի լավ չէր լինի, եթե բոլորովին չլինեին։

ԱԴԱՄԱՆԴ ՂԱՐԻԲՅԱՆ

Ես մի ընկերուհի ունեմ, անունը՝ Արմենուհի։ Նա գեղարվեստական գրքեր շատ է սիրում կարդալ։ Ահա մի օր ինչ պատահեց։

Արմենուհին դասերից հետո մտավ գրադարան, մի գիրք վերցրեց ու գնաց տուն։ Տանը պարզվում է, որ այդ գրքից երկու թերթ պոկված է։

Նա որոշում է դիմել ընկերուհուն՝ այսինքն ինձ։ Եկավ ինձ մոտ և հարցրեց.

— Նաիրա, դու այս գիրքը կարդացե՞լ ես։

— Կարդացել եմ,— ասացի։

— Ես. այ, այստեղ եմ հասել, կըպատմե՞ս, թե հետո ինչ է լինում։

Ես իմ գրապահարանից հանեցի նույն գրքի իմ օրինակը, գրամեքենայով տպագրեցի այդ երկու էջն ու տըվեցի Արմենուհուն։

— Վերցրու և սոսնձով կպցրու գըրքին։ Քեզ համար կարող էի պատմել,



Նկ. ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆ

բայց այդ գիրքը դեռ շատ շատերն են կարդալու,— ասացի ես։

ՆԱԻՐԱ ՊՈՂՈՍՅԱՆ

Մի անգամ ճամբարում տղաներով գնացինք լողանալու։ Երբ լողացել ու գետից դուրս էի գալիս, տեսա Սարգսին ափին նստած։ Նա չէր լողացել, ոտքը վնասված էր, բժիշկները արգելել էին ջուրը մտնել։ Նա ձուկ էր բռնում։ Հանկարծ մեկը սկսեց օգնություն կանչել։ Ձայնողը Տիգրանն էր, ընկել էր գետի խոր մասը և խեղդվում էր։ Սարգիսը առանց երկար-բարակ մտածելու մի կողմ գցեց ձկնորսական կարթը և նետվեց ջուրը։ Ես չնկատեցի էլ, թե նա ինչպես հասավ խեղդվող Տիգրանին։ Ես էլ գնացի օգնելու և խեղդվողին ափ հանեցինք։ Հետո երկուսին էլ տարան հիվանդանոց։ Երբ Տիգրանը ուշքի եկավ՝ իր կողքի մահճակալին տեսավ Սարգսին։ Նրանք իրար էին նայում և ժպտում։

Տիգրանն ու Սարգիսը հիմա ապրում են տարբեր քաղաքներում և իրար հետ զրուցում են նամակներով։

ԱՐՄԵՆ ԼԱՄԲԱՐՅԱՆ

Ձմռան արձակուրդներին ես և ընկերս գնացինք Ծաղկաձոր դահուկ քշելու։ Նստեցինք ճոպանուղի, բարձրացանք վերև։ Ես անմիջապես հագա իմ դահուկները և սկսեցի սահել։ Սահելն այնքան հաճելի էր և հեշտ, որ ես չնկատեցի ինչպես անջատվեցի ընկերոջիցս։ Եվ երբ արդեն ներքևում էի, սկսեցի փնտրել Միհրանին։ Շատ ման եկա, չգտա։ Կարգին վախեցա, սկսեցի ոտքով վերև բարձրանալ։ Բարձրանալը շատ դժվար էր, և ես հաճախ էի սայթաքում։ Երբ քիչ էր մնացել, որ տեղ հասնեի, տեսա մարդկանց մի մեծ խումբ։ Հավաքվել, աղմկում էին։ Ինձ թվում էր կռվում են։ Երբ մոտեցա, տեսա, որ մի կին լաց լինելով համբուրում է Միհրանին։ Իմ ուրախությանը չափ չկար։ Հարցուփորձ արի և պարզվեց, որ մի յոթնամյա երեխա, տեսնելով, որ թեքության վրա շատ ձյուն կա, ուզեցել է ձնեմարդ պատրաստել։ Ոտքը սայթաքել է, ցած է գլորվել։ Միհրանը տեսել է և նետվել փրկելու փոքրիկին։ Միհրանի արածն ավելին է քան ընկերասիրությունը։ Միհրանը խիղճ ունի, մարդասեր է։

ԱՐԹՈՒՐ ՄԽԻԹԱՐՅԱՆ

# Արդյո՞ք ես ընկերասեր եմ

Երևանի № 78 դպրոցի Գ-րդ ա դասարանի աշակերտների շարադրություններից

Դասերը վերջացել էին։ Տուն էի գնում, մեկ էլ տեսնեմ մի խումբ երեխաներ են հավաքված իրար գլխի։ Մոտեցա։ Տեսնեմ երկու տղա կռվում են։ Փորձեցի բաժանել։ Նրանց ընկերները ինձ ետ քաշեցին «մարտահրապարակից» և ասացին.

— Թող կռվեն, ինչո՞ւ ես խանգարում։

Փորձեցի բացատրել նրանց, որ այդպես վարվել չի կարելի։ Բայց լսել չուզեցին, տրամադրված էին իրենց ընկերոջ կռիվը, ծեծկռտուքը դիտելու։

Իմ կարծիքով, նրանք չգիտեն ինչ բան է ընկերասիրությունը։

Ընկերս դասից փախել և ինձ խնդրել է, որ ասեմ հիվանդ է, դասի չի եկել։ Դասից փախել է, որովհետև դասը չի սովորել, մատյանում էլ «երկուս» ունի։ Դասի ժամանակ ուսուցչուհուն պետք է խաբեմ, բայց ես էլ ընդհանրապես ստել չեմ կարողանում և ամեն ինչ իսկույն պարզվում է։ Այդպես եղավ նաև այս անգամ։ Ընկերս մյուս օրը եկավ և ինձ մատնիչ հայտարարեց։

Ես չեմ հասկանում, ինչպե՞ս վարվեի, որ ճիշտ լինեի, ուսուցչուհո՞ւն խաբեի, թե՞ ասեի իսկությունը։ Թերևս ամենաճիշտը այն կլիներ, որ թույլ չտայի ընկերոջս փախչել։

ԷԴՎԱՐԴ ՍԱՐԳՍՅԱՆ

# ՆՐԱՆՑ ՍԻՐՏԸ ԼԵՌՆԵՐՈՒՄ Է

## 12. ՀԱՅՏՆՈՒԹՅՈՒՆՆԵՐ

Երեխա ժամանակ տատիցս լսել եմ մի այսպիսի պատմություն. 1918 թվին, Ղարաքիլիսայի հերոսամարտերից հետո մեր գյուղացիները թուրքերից չհնազանդվելով, որոշում են գնալ ամրանալ Լոռվա ձորերի քարանձավներում: Եվ մի քանի տղամարդ են ուղարկում, որ սրանք գըռնան քարանձավների հատակները քերեն:

Տղամարդիկ գնում են Ծակքարի քարանձավները ու իրիկունը ետ գալով պատմում.

— Զաղեքի մեջ կես մետր հաստությամբ տարթ էր կպած, քերելով գնացինք հասանք վերջին զաղին: Այստեղ բահով որ տարթը շուռ տվինք, տեսանք տարթի տակ ձորերում ման գալու համար սարքված ձեռնափայտ կա, մագաղաթի թերթեր: Թերթերը տարթից պոկեցինք, տեսանք, որ չի կարդացվում, տառերը ջնջված են, քարափից ցած թափեցինք: Հետո էլ քարե թանաքաման դուրս եկավ՝ ձորերի ապրողները դրա մեջ մուր են լցրել ու ջրով գրել:

Տատիս պատմած այս պատմությունը, որն այն ժամանակ հեքիաթանման էր թվում, ինձ համար վաղուց արդեն իմաստավորվել է. 1826 թվի պարսկական ասպատակությունների ժամանակ, Ջգրաշենի կամ Մեծ ձորի Ծակքարում հազարավոր մարդիկ էին պատսպարվել: Նրանց մեջ է եղել նաև ապագա արքեպիսկոպոս Սարգիս Ջալալյանը, որը հետագայում երախտագիտությամբ է գրում այդ քարայրների մասին. «Ջգրաշենը Լոռու ավերակ գյուղ է: Սա իր մոտ ունի վիմափոր այրերի ամուր ապաստարան, որն իր լայնածոց գրկում պահում է հուսացողներին: 1826 թվին այս տեղը երախտավոր եղավ և հազարավոր անձինք պահպանեց պարսիկներից: Նրանց մեջ գտնվում էի նաև ես»:

Ահա թե երբ էր երկաթե փոքրիկ խաչերով զարդարված ձեռագիրը հայտնվել Ծակքարի քարանձավներում:

1105 թվին Ղզիլ ամիրայի սելջուկական զորքերը գրավեցին Լոռին և ավերեցին Հաղպատի և Սանահինի հռչակավոր վանքերը, որոնց մատենադարաններում հազարավոր ձեռագրեր էին հավաքված: 1151 թվին սելջուկները կրկնում են իրենց ասպատակությունը, ամայացնում Լոռին:

Ահա այդ տագնապալի ժամանակներում սկիզբ առավ Լոռվա վանքերի և ամենից առաջ Հաղպատի և Սանահինի վանքերի ձեռագրերի և այլ արժեքների փո-

խադրումը անմատչելի քարանձավները: Սանահնի վանքի ունեցվածքը, այդ թվում նաև թանկարժեք ջահը, պահում են վանքի արևմտյան ձորում, որն իր թխադեմ ու ազատասեր բնակիչների անունով կոչվում էր Սևորդաց ձոր: Վերադարձին զորավար Լանկը բռնում է գանձը թաքցնող երեք վարդապետներին և քառասուն սարկավագներին: Չկարողանալով նրանցից իմանալ գանձերի տեղը, սպանում է նրանց: Հետագայում սրանց շիրմի վրա կանգնեցվում է «Երեք վարդապետ» կոչվող խաչքարը, բայց վանքի ունեցվածքի և ձեռագրերի տեղը այդպես էլ մնում է անհայտ:

Անցնում են տարիներ և հետզհետե վտանգներն այնքան են շատանում, որ քարանձավները ժամանակավոր գաղտնարաններից վերածվում են մշտական գործող մատենադարանների:

Վրա է հասնում 1603 թիվը: Շահ-Աբասն ամայացնում է հայոց աշխարհն ու ժողովրդին տեղահան անելով քշում Պարսկաստան: Եվ մարդիկ ձեռագրերը քարայրներում թողնելով, հեռանում են Լոռվա ձորերից, հուսալով, որ մի օր ետ կվերադառնան: Բայց ոչ նրանք, ոչ էլ նրանց թոռները ետ չեկան և ամբողջ 170 տարի բուերն էին վայում Լոռվա ամայացած ձորերում:

1776-ին Ղարաբաղից Զագյամ գաղթած և ապա վրաց Հերակլ Երկրորդ թագավորի հրավերով Ծովավեր տեղափոխված մելիք Մխիթար Քալանթարը մի զինված ջոկատի և հոգևորականների ուղեկցությամբ Լոռվա ձորով բարձրանում է վեր՝ ծանոթանալու իր նոր տիրապետությանը: Նրանք գտնում են Հաղպատի վանքը ու նրանով սքանչացած զոհ մատուցում: Հետո սկսում են պրպտել վանքը, և ս. Գրիգոր եկեղեցու տանիքում ու զանգակատանը գտնում են հարյուրավոր ձեռագրեր:

Սկսվում է վերակենդանացած Լոռվա ձորերի ձեռագրերի ճակատագրի մի նոր փուլ:

1785-ին ավարացիների Ումմա խանը Լոռին ասպատակելով հասնում է Օձուն: Օձունից ոչ հեռու, ձորի մեջ մի վանք կա և մի քարայր: Երկուսն էլ Հոռոմայր, այսինքն հոռոմեացու քարայր անունով: Պատմում են, որ այստեղ ժամանակին ճգնել է հայերի երբեմնի ոխերիմ թշնամի հունաց Վասիլ իշխանը: Հովհաննես Իմաստասերը սրան բժշկում է անբուժելի համարվող ախտից և իշխանը նվիրվում է ճգնության: Հոռոմայրի մոտ՝ անմատչելի քարայրում պահված են լինում բազմաթիվ ոսկեգիր մատյաններ: Ումմա խանը կարգադրում է դրանք կտրտել ու լցնել ձորը. մի քանի տասնյակ տարի հետո այս մասին Սարգիս Ջալալյանին պատմում են տեղացիները:

Այդ դեպքից անցնում է 12 տարի: Ռուսաց զորքերի հետ Թիֆլիս է ժամանում արքեպիսկոպոս Հովսեփ Արղությանցը: Նա բնիկ սանահնեցի էր և քաջատեղյակ էր քարայրում ձեռագրեր պահվելու փաստին: Մի ձեռներեց հոգևորականի միջոցով նա Աչառանց դժվարամատչելի այրից հանել է տալիս բազմաթիվ ձեռագրեր: Դրանցից երկուսը այժմ պահվում են Մատենադարանում: Առաջինը հայոց Դավիթ կաթողիկոսի պատվերով 1599 թվին գրել ու ծաղկել էր Կարին քաղաքի նշանավոր գրիչ Առաքել Գեղամացին: Մյուսը Սանահնի վանքի նշանավոր Քոթուկն է՝ վանքի կալվածագրերի ժողովածուն: Քոթուկի հիշատակարանում կարդում ենք. «Տիրոջ թվականության 1799 տարվա և հայոց (թվականության) 1246 (1797) թ. ապրիլի տասին, ես՝ Հովսեփ արքեպիսկոպոս Սանահնեցիս՝ Ծիոշիբեկի որդի, Երկայնաբազուկ Արղութեանց, Զաքարիա Ամիրսպասալարի իշխանների ազգից, Սուրբ Աթոռ Էջմիածնի ծայրագույն նվիրակ, Ռուսաց երկրի ամբողջ հայոց ազգի առաջնորդ և Նոր Նախիջևանի ու Գրիգորիոպոլի հիմնադիր, երբ ռուսաց հզոր զորքերի հետ եկա իմ հայրենի երկիր՝ Թիֆլիս, նրա ավերումից հետո, սանահնեցի Մեհրապենց Առաքել վարդապետին ուղարկեցի Սանահին՝ նրա այրերում գրքեր որոնելու համար: Նա բացելով Աչառանց այրը, բազմաթիվ գրքերի և զանգակի հետ գտել էր նաև այս Քոթուկ գիրքը, որ ունի նույն վանքի բոլոր հարկավոր թղթերի ընդօրինակությունը. նախնիների շավիղին հետևելով՝ ես էլ սրա մեջ գրելու եմ ինչ որ կնվիրեն նույն վանքին»: Թվում է, թե այլևս հնարավոր չէ Հաղպատի և Սանահնի ձորերում նոր բան հայտնաբերել, բայց 1850-ական թվականներին գյուղացիները այդ ձորերի քարանձավներում պատահաբար գտնում են գրքեր, զենք, հողագործական գործիքներ: Հաղպատի Ծակքարից հանում են վանքի պղնձե [illegible] կաթսաներ, իսկ Սանահնի ձորերից Սանահնի վանքի հին եկեղեցական սպաս-

քը, որը գուցե հենց այն երեք վարդապետների թաքցրածն էր, որոնց սպանեց զորավար Լանկը:

Վերջապես Հաղպատի մի այրում էլ գտնում են մի ձեռագիր հավաքածու և և այն նվեր տալիս Հաղպատի վանահայր արքեպիսկոպոս Սարգիս Ջալալյանին: Նրա մահից հետո ձեռագրերը հանձնվում են Էջմիածնի Մատենադարանին և փրկվում կորստից:

Լոռվա ձորերում թաքցված ձեռագրերի պատմությունները ավելի ու ավելի հեռու էին տարածվում: 1872 թվին Սանահնի ձորն է գալիս Ալեքսանդր Երիցյանը՝ ձեռագրեր որոնելու: Գտնում է մի տեղացի, որը համաձայնում է իջնել Աչառանց այրը: Այրի մեջ նա գտնում է երեք հատ աթարի նմանվող բաներ և ենթադրելով, որ դրանք կարող են պետքական լինել,



ցած է գցում: Երիցյանը ուրախացած տեսնում է, որ դրանք ձեռագրեր են, դարեր շարունակ անձրևաջրերից քարացած: Այդ ձեռագրերից մեկը նա նվիրում է Մոսկվայի Ռադիշչևի գրադարանին, մյուսը՝ Սանասարյան վարժարանին, իսկ երրորդը Էջմիածնի մատենադարանին: Սանասարյան վարժարանինը այրվում է: Էջմիածնինը հետագայում տեղափոխվում է Երևանի Մատենադարան ու հանձնվում գիտնականներին: Գտնելուց համարյա հարյուր տարի հետո գիտնականներին հաջողվում է անջատել մի քանի քարացած մագաղաթե թերթեր: Կարդալ չի հաջողվում: Գիտնականները փորձում են բացել նաև մոսկովյան ձեռագիրը, այդ նույնպես չի հաջողվում, որովհետև թղթյա ձեռագիրը անձրևաջրերից այնպես էր փչացել, որ խյուս էր դառել:

1899 թվին Թիֆլիսի եկեղեցական թանգարանի տնօրեն վարդապետ Գյուտ Աղանյանցին մի ծանոթ լոռեցի քահանա պատմում է, որ իրենց գյուղի վերևում մի անմատչելի քարայր կա, որտեղից ուժեղ քամու ժամանակ ձեռագրերի կտորներ են թափվում:

Ոգևորված Աղանյանցը գալիս է Սանահին, գտնում է մի տեղացի երիտասարդի, որը համաձայնում է իջնել Աչառանց այրը, բայց երբ մոտենում են ձորաբերանին, երիտասարդը խելապատառ է լինում: Վշտացած Աղանյանցը գնում է Հաղպատ, որ միշտ էլ հռչակված է եղել իր քարանձավներով: Նրան ներկայացնում են գյուղի ամենանշանավոր քարագնացին՝ Ալիխան անունով մի երիտասարդի: Պատմում են, որ նա այնքան ճարպիկ է, որ շրջակա ձորերում վայրի մեղվի բույն չի թողել՝ բոլորը քանդել է: Ալիխանը՝ մողեսի նման քարագնացը Աղանյանցի աչքի առջև պարաններով մագլցում է ծակ այրը ու փայտի կտորով սկսում փորփրել հատակը: Անցնում է որոշ ժամանակ և. «մի թրմփոց լսվեց, վրա ընկանք ընկած իրերին և տեսանք, որ Ալիխանի տրեխի ծոպով կապած թղթերի մի կույտ է՝ մագաղաթե ամեն տեսակ և թղթե հնագույն ժամանակի գրչագրերի բազմաթիվ կտորներ... մի կես ժամ հետո երկրորդ թրմփոցը եկավ. դարձյալ տրեխի ծոպով կապած գրչագրերի հատվածներ: Տրեխների ծոպերը սպառվել էին, այդ պատճառով երրորդ թրմփոցն արդեն Ալիխանի գոտկապով ընդունեցինք»,— նկարագրում է Աղանյանցը քարանձավի հետազոտումը:

Ծակ այրում գործերը վերջացնելուց հետո Աղանյանցը Ալիխանին վերցնում գնում է Սանահին, այնտեղի քարայրները ուսումնասիրելու:

«Յոթ հոգի վեր եկան քարագլուխը և երկայն ու հաստ պարանը կապեցին մի ծառից,— պատմում է Աղանյանցը,— մի երկրորդ բարակ պարանով էլ Ալիխանը կապեց մի մեծ քթոց և հաստ պարանն էլ իր մեջքից, նստեց քթոցի մեջ և կամաց-կամաց սկսեց իջնել դեպի այրի դուռը, որ հիսուն արշինաչափ ցած էր բարձրավանդակից: Ծառը վտանգավոր տեղ

էր, ուստի և բոլոր մարդիկ պարանի մի ծայրը ավելի հեռվից բռնեցին, իսկ ծառի մոտ մնաց մի հուժկու գյուղացի՝ Բարսեղը, պարանը և քթոցը ղեկավարելու համար:

Ես մի օգնականով ձորում հսկում էի այրի տակը, իսկ դիմացի քարագլուխը լցվել էր բազմաթիվ սանահինցիներով, մարդ ու կին, ծեր և մանուկ, որոնք բոլորն էլ սարսափով էին նայում այդ գործողությանը: Իսկ Բարսեղի հոգը չէր: Նա մի կողմից կառավարում էր պարանը, մյուս կողմից բարձր ու գեղեցիկ ձայնով երգում.

Կաժդի դեն, կաժդի չաս
Դուշա մայա, պոմնյու վաս:

Բայց մեր և ամենքի սարսափը բռնել էր. Ալիխանը իջել-հասել էր այրին, սակայն ժայռը դուրս ցցված էր այնտեղ, իսկ այրը մնում էր չորս-հինգ արշինաչափ ներսը: Հանկարծ մեր քարագնացն սկսեց ճոճվել քթոցով օդի մեջ, ամենքս դողալ սկսեցինք, կարծելով թե ձախորդության հանդիպելով և վերադառնալու հնար չունենալով խեղճ մարդը խելքը կորցրել է. բայց չանցավ հինգ րոպե և ուժգին ճոճվելու ժամանակ Ալիխանը իրեն հասցրեց այրի դուռը և ընկավ դռնից ներս:

. Փառք տվինք աստծուն: Չանցած մի կես ժամ, վերևից ցած ընկավ մի դուռ, անտաշ ու կոպիտ դուռ, որ վերևը հիշատակած առասպելական փակված դուռն էր:

Մի կես ժամ էլ չանցավ, և ած գլոր վեց մի ահագին քարե սանդ...»

Սրանով էլ ավարտվում է Աչառի այրի հետազո..ությունը: Աղանյանցը վերադառնում է Թիֆլիս և իր հետ բերած ձեռագրերի մնացորդները հանձնում ցարական գիտությունների ակադեմիային:

Լոռվա ձորերում կատարված բազմաթիվ հայտնագործությունները հիմք են հանդիսանում Ս. Տեր-Ավետիսյանի համար, որպեսզի վերջինս 1915 թվին հնագետների համագումարում կրկին բարձրացնի Հաղպատի և Սանահնի քարանձավների հետազոտման կարևորության հարցը: Ակադեմիկոս Մառը լրացնում է նրան, ասելով, որ այդ քարանձավները հետաքրքիր են նաև որպես հետազոտման ինքնուրույն օբյեկտներ: Բայց ո՞վ պետք է հետազոտեր, երբ այդ ժամանակ ամբողջ Անդրկովկասում նույնիսկ մի անձավախույզ չկար:

(Շարունակելի)







ԿԱՐԻՆԵ ԳԻԺԼԱՐՅԱՆ. «Դիմանկար» Շամշադինի շրջ., գ. Վ. Կարմիրաղբյուր, 4-րդ դաս.



ՍՄԲԱՏ ԿԱՐԱՊԵՏՅԱՆ. «Նատյուրմորտ» 4-րդ դասարան

# Մինչև օրս սպասում է...

(հայ. ժող. հեքիաթ)

Լինում է չի լինում մի հարուստ մարդ է լինում: Նա մեռնում է և հարստությունը մնում է կնոջը:

Ժամանակ անց էս կինն ամուսնանում է մեկ ուրիշի հետ:

Մի օր, աղքատի տեսքով մեկը, դուռը առանց թակելու, ներս է մտնում և ողորմություն խնդրում էս կնոջից: Սա դռան բացվել-փակվելը լսած չի լինում և հարցնում է.

— Վո՜ւյ... էս որտեղի՞ց լույս ընկար, այ մարդ:

Աղքատը նայում է նրան, հասկանում է, որ կնոջ ծալը ոնց որ թե պակաս է, ասում է.

— Երկնքից:

— Երկնքի՞ց... Էնտեղ ամուսնուս չե՞ս տեսել: Երեք տարի է, մեռել է.

— Բա ո՜նց, տեսել եմ,— պատասխանում է աղքատը:

— Ի՞նչ հալի է:

— Վատ: Հագի շորերը փտել են, տկլոր է ման գալիս:

— Վա՜յ լուսս քոռանա... բա ի՞նչ է ուտում:

— Բան էլ չի ուտում,— պատասխանում է աղքատը:— Սոված-ծարավ, տկլոր-բոբիկ ման է գալիս:

— Դու էլի երկինք ես գնալու՞,— հարցնում է կինը:

— Բա ոնց,— պատասխանում է աղքատը:

— Որ էդպես է, հետդ մի



քիչ բան-ման դնեմ տար: Ասա, ի՞նչ ուղարկեմ:

— Ի՞նչ պիտի ուղարկես: Շորումոր դիր, ուտելիք, մի քիչ էլ փող,— ասում է աղքատը:

Կինը բոլ շորումոր, ուտելիք ու փող է տալիս: Աղքատը վերցնում է ու գնում:

Իրիկունը մարդը շուկայից տուն է գալիս: Կինը պատմում է.

— Այ մարդ,— ասում է,— երկնքից մեկը եկել էր մեր տուն ու մեռած մարդուցս բարև բերել: Ասաց որ նա աղքատության մեջ է, սոված ու տկլոր:

— Դու էլ վերցնեիր ու բան-ման ուղարկեիր մեռած մարդուդ:

— Ուղարկեցի, բա ո՜նց..,— ուրախ բացականչում է կինը:

— Ի՞նչ ուղարկեցիր:

Կինը մեկ առ մեկ թվարկում է, թե ինչ է ուղարկել:

Ամուսինը բարկանում է, վերցնում է ճիպոտն ու տուր թե կտաս, մի լավ ծեծում է: Հետո փոշմանում է:

— Կնի՜կ,— ասում է,— սխալ վարվեցի: Դու քիչ բան ես ուղարկել: Արի, տանն ինչ ունենք-չունենք առնեմ տանեմ էդ խեղճ մարդուն: Ետ կգամ, կաշխատեմ, աստված տարածիս տասնապատիկը կտա մեզ:

Կինը ներում է մարդուն, համաձայնում, եղածը կապում-կապկպում են, բարձում սայլին: Մարդը առնում գնում է, կինը մնում, սպասում է, թե նա պիտի ետ գա... ու մինչև օրս սպասում է:

ՍՈՆԱ ՍԱՄՎԵԼՅԱՆ
Հոկտեմբերյան. Բերքաշատ գյուղի միջն. դպրոցի 8-րդ դաս.








ՍԵՐԳԵՅ ՎԱՐԴԱՆՅԱՆ

«Հաղթանակ» զբոսայգուց դիտելիս Երևանը վարդագույն քարե ծաղիկ է թվում. նրա վարսանդը Լենինի հրապարակն է, իսկ թաղամասերը ծաղկաթերթերի նման շարված են հրապարակի շուրջը: Եվ այդ ծաղիկը կարծես բացվել է կանաչ, հսկայական թաղարի՝ քաղաքը շրջափակող կանաչ այգիների ու զբոսայգիների մեջ: Դեմ հանդիման Արարատի հրաշքն է: Հեռվում, քաղաքի տարբեր կողմերում երևում են բլուրները՝ Ծիծեռնակաբերդը, Կարմիր բլուրը, Շենգավիթը, աջում՝ Հրազդանի կիրճն է, որի քարանձավները հնուց ի վեր կացարաններ են եղել. հնագետները այնտեղ հայտնաբերել են մարդու գործունեության վաղնջական հետքեր: Բայց սահեցնելով հայացքդ վարդագույն ալիք տված, ծովացած քաղաքի վրայով, փնտրիր Արին-բերդի բլուրը: Այնտեղ, լուսավոր մշուշներից երևացող բլուրում է հայտնաբերվել Երևանի սեպագիր վկայականը. «Հողը եղել է ամայի, ձեռնարկեցի հզոր գործեր...»,— հայտարարում է Արգիշտին՝ Երևանի կնքահայր հզոր արքան, որը հիմնադրեց բերդ՝ ի սարսափ թշնամյաց և ի փառս շինարարի: Բայց արքաները չկարողացան պահել-փայփայել իրենց քաղաքը՝ թշնամու փոշամպ խորշակները չորացրեցին Նոյի տնկած ձիթենու ճյուղն ու խաղողի վազը, այրեցին քաղաքը և չոր անապատ դարձրին զմրուխտ ակը: Եվ փոշիների մեջ, հողի տակ մնացին Վանի թագավորության հզոր աստվածների արձանիկները՝ խաղալիքաչափ իրենց մեծությամբ ու զորությամբ, բախտի ձեռքին խաղալիք դարձնելով նրանց զորությանն ապավինած քաղա-

# ԵՎԱՆ



քի բնակիչներին: Բայց Երևանը հիմնադրումից սկսած անընդհատ շարունակեց իր կյանքը, մինչև բացվեց այս վարդագույն, քարե հազարաթերթիկ ծաղիկը...



Քաղաքի պատմությունը չընդհատվեց, չընդհատվեց արդեն 2765 տարի ձգվող շղթան և գրերի գյուտից հետո նորից երևաց նրա անունը, երկու դար հետո (607 թ.) Երևանը հիշվում է որպես բերդաքաղաք, ինչպես Սեբեոսն է վկայում, 643-ին արաբների հոծ բանակը պաշարեց քաղաքը և երկարատև մարտերից հետո չկարողացավ գրավել: Էլի մի երկու տասնամյակ, և քաղաքի պարիսպների մոտ նորից են հայտնվում նվաճողները: Ավերածությունները ու գերեվարությունները, մահն ու ավերն անընդհատ հետապնդում են քաղաքի բնակիչներին ու այսօրվա հեռու-հեռվից Երևանը պատմության մութ գիշերում մեկ վառ, մեկ թույլ առկայծող աստղ է թվում:

9—10-րդ դարերում Երևանը այգեշատ և վաճառաշահ գյուղաքաղաք էր: Արաքսի ափերով դեպի Կարին և Սև ծովի առափնյա քաղաքները տանող ճանապարհի Նախիջևանի հատվածը այն ժամանակ կոչվում էր «Երևանայ ճանապարհ»: Այնուհետև իրար են հաջորդում թուրքերը, մոնղոլները, թուրքմենական քոչվոր ցեղերը, բայց և այդ մղձավանջային տարիներին իսկ Երևանում գրքեր էին գրվում ու ձեռագրեր ընդօրինակվում:



Մոնղոլական տիրապետության շրջանում հայտնի մեծահարուստ Ավետյանների որդի Սահմադինը 1264 թ. Երևանը իր հող ու ջրով գնում է և դարձնում իր սեփականությունը: Երեք տասնամյակ անց մի ձեռագրում առաջին անգամ հիշատակվում է նաև Նորքը: 14-րդ դարում Երևանը բավական ընդարձակվել էր և մի հիշատակարանում նույնիսկ կոչվում է «պատվական» քաղաք:

15-րդ դարում դառնում է մի բավական ընդարձակ կուսակալության կենտրոն: 1579 թ. թուրք Ֆահրադ փաշան նախկին բերդի տեղում կառուցում է (1582—83 թթ.) Երևանի նշանավոր բերդը, որը ժամանակի անխորտակելի ամրություններից էր, ուներ կրկնակի պարիսպ, շուրջ 50—60 աշտարակներ ու բուրգեր, պահվում էր այնտեղ մեծաքանակ կայազոր: Բայց այս հզոր բերդը ի զորու չեղավ դիմագրավելու պարսից Շահ-Աբասի զորքերի հարձակմանը: 1604 թ., շուրջ ութամսյա պաշարումից հետո պարսիկները ներխուժում են քաղաք, արյունահեղ կոտորածից հետո Արարատյան աշխարհի մյուս բնակիչների հետ Պարսկաստան քշում նաև ողջ մնացած երևանցիներին: Պարսկական տիրապետության ընթացքում Երևանը պարսիկ խաների նստավայրն է դառնում: Ինչ էլ որ կառուցվել էր, ինչ էլ չէին կարողացել քանդել ասպատակիչները, գետնին հավասարեցրեց 1679 թվի երկրաշարժը, որը կարծես ուզում էր վերջակետ դնել քաղաքի պատմությանը: Քանդվեցին բոլոր շինությունները ու վեհաշուք եկեղեցիները, հողի տակն անցան տներն ու աղբյուրները, «չմնացին ոչ շուն, ոչ կատու և ոչ հավ»,— գրում է տարեգիրը: Բայց Երևանը նորից փյունիկի նման հարություն առավ ընդամենը 45 տարում,



և 1724-ին հերոսաբար կռվեց թուրքերի ութ անգամ գերազանցող ուժերի դեմ:

Միայն թուրք-պարսկական պատերազմի ժամանակ քաղաքը տասնչորս անգամ ձեռքից ձեռք անցավ և ամեն անգամ ավեր ու կոտորած, թալան ու գերեվարում...

Եվ գուցե ոչ միայն ռազմաքաղաքական նկատառումներով, այլև երևանցիների անկոտրում կամքը հաշվի առնելով էին 18-րդ դարի հայ ազատագրական շարժման գործիչները նախատեսում Երևանը հռչակել քաղաքամայր: 1787 թ. կազմված Հայաստանի քարտեզի վրա Երևանը ներկայացված էր որպես ազատ Հայաստանի մայրաքաղաք: Այժմ մնում է միայն զարմանալ մեծաց կանխատեսման վրա...



Անցնում էին տասնամյակները և արևելյան փոշոտ քաղաքի դիմագիծը շատ քիչ էր փոխվում: 1822-ին անգլիացի ճանապարհորդ Ռոբերտ Քեր Փորթերը քաղաքում հաշվում է 15 հազար բնակիչ: Մի քանի տարի անց և քաղաքի պարիսպների տակ կկռվեն ռուսական բանակի զինվորներն ու նրանց միացած հայ կամավորները, պարսկական վայրագ լծից կազատագրվի քաղաքը և նրա պատմության մեջ նոր էջ կբացվի: Այն կդառնա Հայկական մարզի, Երևանի գավառի, այնուհետև Երևանի նահանգի կենտրոնը: Եվ թախծոտ արևելյան շուկա հիշեցնող քաղաքում կավե տների փոխարեն կհայտնվեն եվրոպական տիպի շենքեր, դպրոցներ, իսկ դարասկզբին՝ նույնիսկ հեռախոս ու ձիաքարշ տրամվայ, որի կառուցման համար մասնագետներ կհրավիրվեն հեռավոր Գերմանիայից: Բայց քաղաքի ազատագրումից հետո էլ կանցնի շուրջ հարյուր տարի և Երևանը կմնա տիպիկ գավառական քաղաք:

1920 թ. Երևանը ուներ 30 հազար բնակիչ. այս թիվը անգիր գիտի յուրաքանչյուր դպրոցական: Յուրաքանչյուր դպրոցական գիտի նաև, որ քաղաքը հրաշք-մանուկ է և մեծանում է ժամ առ ժամ, օրը օրին, այսօր, 60 տարի անց, երեսուն հազարին գումարվել է ուղիղ մեկ միլիոն... Եվ դժվար գտնվի մեկը, որ համարձակ կանխատեսի, թե այս թվին մոտ ապագայում քանի նիշ կգումարվի:



... Հայաստանը անվանել են «դեգերող մայրաքաղաքների երկիր». Վան, Արմավիր, Երվանդաշատ, Արտաշատ, Տիգրանակերտ, Վաղարշապատ, Դվին, Կարս, Անի... Այսօր կարծես Երևանը իր մեջ ներառել է անցյալ մայրաքաղաքների փառքն ու հիշատակները, նրանք ապրում են փողոցների ու կինոթատրոնների, հյուրանոցների անվանումներում՝ Էրեբունի, Դվին, Անի... Երևանը ներառել է նաև պատմական Հայաստանի մյուս քաղաքների հու-









հիշատակները. Մալաթիան ու Արաբկիրը, Զեյթունն ու Սեբաստիան, Մարաշն ու Կամարակը, Կիլիկիան այժմ օրգանապես սերտաճել, անբաժան ծաղկաթերթեր են դարձել մի քաղաքի, որ հավերժ պիտի ծաղկի ու նոր գույներ հագնի: Այսօր «Հաղթանակ» զբոսայգուց դիտելիս, երևում են Ծիծեռնակաբերդն իր անշեջ կրակով, նրա կողքին՝ մարզահամերգային հսկա համալիրը, հեռվում, «Զվարթնոց» օդանավակայանի նոր շենքն է, քաղաքի տարբեր մասերում երևում են երևանյան մետրոյի կայարանները, մինչև հորիզոն ուրվագծվում են քաղաքի նորակառույց թաղամասերը: Եվ երևանյան այս լուսաճառագ օրվա մեջ, աշնան ոսկին ու կարմիրը հագած քաղաքին նայելիս ուզում ես կրկնել Մեսրոպ Թաղիադյանի շուրջ 150 տարի առաջ մարգարեաբար ասած խոսքերը... «Այս բարձունքից երևում է երկրի վրա ծնված բոլոր քաղաքներից անդրանիկն ու միշտ երևելին՝ Երևանը»:

## ԻՐԵՆՔ ԻՐԵՆՑ ՄԱՍԻՆ




## ԹՈՒՅԼ ՏԱ՞ՆՔ ԱՐՏԱԳՐԵՆ...

Սիրելի՛ Նարինե, ինձ թըվում է, թե դու շատ խիստ ես վարվում: Կան աշակերտներ, որոնք ծույլերի հանդեպ «բարեհոգությունը» համարում են «իսկական ընկերություն»: Նրանց կարծիքով «իսկական ընկերը» պետք է թույլ տա արտագրեն. դրանով իբրև թե «օգնում են» ընկերոջը: Մի քանի անգամ եթե թույլ ենք տա,իս արտագրել, ապա նրանք առիթը բաց չեն թողնում օգտվելու այդ «հեշտ» միջոցից: Ասենք նաև, որ արտագրությունն էլ արդեն իսկ նրանց համար մի բան կատարել է և ոչինչ չկատարելուց լավ է ու օգտակար: Ուրեմն, պետք է թույլ տալ, որ գոնե արտագրեն:

**ՄԵԼԱԴԱ ՔՈՉԱՐՅԱՆ**
ք. Գորիս, գ. Հարթաշեն միջն. դպրոցի 6-րդ դաս.

## ԳԻՏԵ՞Ք, ՈՐ...



Նկ. ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

● Մի անգամ մեծ զորավար Ա. Վ. Սուվորովին հարցրին, թե նրա կարծիքով ինչպիսի հատկանիշներով պետք է օժտված լինի իսկական հերոսը: Նա պատասխանեց.

— Իսկական հերոսը պետք է լինի խիզախ, բայց ոչ տաքարյուն, արագաշարժ, բայց առանց շտապողականության, ճարպիկ, բայց կշռադատված, ենթարկվող, բայց առանց ստորացման, պետ, բայց առանց գոռոզության, հաղթող, բայց ոչ սնափառ, վեհանձն, բայց ոչ մեծամիտ, սիրալիր, բայց ոչ կեղծավոր, անսասան, բայց ոչ համառ, համեստ, բայց առանց ձևացման, հաճելի, բայց առանց թեթևամտության, սիրալիր, բայց առանց խորամանկության, խորաթափանց, բայց առանց խարդախության, անկեղծ, բայց առանց սխալվելու, բարեհամբույր, բայց առանց ավելորդությունների, պատրաստակամ, բայց առանց հաշվենկատության, վճռական, բայց ոչ կամակոր:

Մնում է միայն ավելացնել, որ զորավարն ինքը օժտված էր այս բոլոր հատկանիշներով:



● Մի ուրիշ անգամ Ա. Վ. Սուվորովին հարցրին, թե քանի անգամ է նա վիրավորվել: Սրան Ալեքսանդր Վասիլևիչը պատասխանեց, որ վիրավորվել է 32 անգամ, երկուսը՝ պատերազմում, տասն անգամ տանը և քսան անգամ արքունիքում:

ԱՆԱՀԻՏ ՊԱՐՍԱՄՅԱՆ

# ՔԵԶ ՇԱՏ ԵՆՔ ԿԱՐՈՏԵԼ

Ծառի վրա՝ լռություն,
Ճյուղի վրա՝ լռություն,
Դու այդ ե՞րբ ես իջել ցած,
Ամպի դուստր՝ ճերմակ ձյուն:

Ինչ սիրուն ես դու փռվել,
Ասես նախշ են նկարել,
Ամեն տերև, ամեն ճյուղ,
Ձյունե երգ է, ձյունե հուշ:

Շուտով կգա Նոր տարին,
Երգ կբերի ու բարիք,
Ձյուն, լավ լուրով ես եկել,
Քեզ շատ էինք կարոտել:

Նկ. ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

Հասցեն՝ 375015, Երևան 15, Կարմիր բանակի փողոց № 15։
Հեռախոսներ՝ 56-32-72, 58-08-33, 56-14-96, 56-43-38։

«Пионер». На армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015. Ереван-15. ул. Кармир банаки. № 15.





**ԱՅՍ ՏԱՐԻ ԼՐԱՑԱՎ ՀԱԿՈԲ ԿՈՋՈՅԱՆԻ ԾՆՆԴՅԱՆ 100-ԱՄՅԱԿԸ.**
**«ՓՈՂՈՑ ԹԱՎՐԻԶՈՒՄ» 1922 Թ.**


Գլխավոր խմբագիր՝ **ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ**
Խմբագրական կոլեգիա՝ ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ., ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՄԻԼԻՏՈՆՅԱՆ Է., ՍԻՐԱՎՅԱՆ Հ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ., ՎԱՐԴԱՆՅԱՆ Ս. (պատ. քարտուղար)
Գեղ. խմբագիր՝ Մ. ՔԵՉՕՂԼՅԱՆ, սրբագրիչ՝ Հ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

*Հանձնված է արտադրության 16.09.1983 թ.։ Ստորագրված է տպագրության 15.12.1983 թ.։ ՎՖ 12391։ Թուղթ օֆսեթ, 70×100¹/₁₆։ Տառատեսակ՝ Նորք։ Օֆսեթ տպագրություն, 2,92 պայմ. մամ., 3,9 հրատ. մամ.։ Տպաքանակ՝ 69562։ Պատ. 2385։ Գինը՝ 15 կ.։*

Сдано в набор 16.09. 1983 г. Подписано к печати 15.12. 1983 г. Формат $70 \times 100^1/_{16}$. ВФ 12391. Бумага офсетная. Гарнитура «норк». Офсетная печать. 2,92 усл. печ. листа, 3,0 уч.-изд. листа. Тираж 69562. Заказ 2385. Цена 15 коп.

ԻՆԴԵՔՍ՝ 77806

ԳԻՆԸ՝ 15 ԿՈՊ.